# Քայլենք հպարտ



ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Հ. ՍԻՐԱՎՅԱՆԻ

Մենք շատ վաղ ենք զարթնել քնից
Վառ արևն է մեզ ժպտում,
Դրոշակները մեղմ զեփյուռից
Ծածանվում են ու ծփում:

Կուռ շարքերով մեր հաղթական
Քայլենք հպարտ ու խրոխտ,
Քեզ ջերմ ողջո՜ւյն, մայիսմեկյան
Լուսապայծառ առավոտ:

Քայլենք, սերունդ պիոներական,
Հրապարակով Լենինի,
Մեր երգն ուրախ ու հաղթական
Թող ամեն տեղ տարածվի:

Մեր մեծ Ստա՜լին, հարազատ հայր,
Միշտ մեզ հետ ես, մեր շարքում.
Եվ մենք քո վեհ գործի համար
Աշխատում ենք, պայքարում,

Որ աշխարհում երկարատև
Խաղաղություն միշտ լինի,
Որ աղավնին ճերմակաթև
Չինչ երկնքում սավառնի:






*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 5

**ՄԱՅԻՍ**

1953 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 25-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Երևանի № 28 դպրոցի պիոներական դրուժինայի Ստալինի անվան ջոկատի խորհուրդը մշակում է ամառային աշխատանքների ծրագիրը:

Ֆոտո Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ



# Գարնանային առավոտ

Վ. ՏԱԼՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

## 1.

Գարնանային արձակուրդի օրերին Ս. քաղաքի զինվորական պարետի օգնականի մոտ եկան երեք պիոներ։ Ժամապահը նրանց ներս չթողեց։

Հենց այդ ժամանակ դուռը թափով բացվեց և շեմքին երևաց միջահասակ, սպորտաձևի կազմվածքով մայորը։ Նա ձախ ձեռքի ցուցամատով գլխարկի հովհարից ինչ-որ բան թափ տվեց ու դրեց գլխին։

— Ընկե՛ր մայոր,—սկսեց ջոկատավարը.— մենք իմացել ենք, որ դուք մասնակցել եք մեր քաղաքի ազատագրման կռիվներին...

— Ճիշտ է, հետո՞...— երկու թևով տղաների ուսերը գրկած առաջ տանելով նրանց հարց տվեց մայորը։

Նրանց հետ միասին նա դուրս եկավ պարտեզից և գնաց դեպի ցածրիկ ու տարօրինակ սապատ ունեցող ավտոմեքենան։

— Շուտ ասացեք, թե ի՞նչ եք ուզում, տղանե՛ր,— ժպտալով ասաց մայորը։

— Մենք շատ ենք խնդրում, որ դուք... որ դուք ղեկավարեք մեր ջոկատի էքսկուրսիան դեպի, ա՜յ, այն բլուրը,— մատը նոսր անտառով ծածկված բլրի կողմը մեկնելով խնդրեց ջոկատավարը։

—«Տանկերի գերեզմանը»,— հեռուն նայելով հիշեց մայորը։

Նա մի պահ մտածմունքի մեջ ընկավ. ապա տեղեկացավ, թե երբ է ծրագրվում հայրենի երկրի այդ գարնանային ուսումնասիրությունը պատմության գիտելիքները խորացնելու նպատակով և զվարթ ասաց.

— Ուրախությա՜մբ... Շատ լավ միտք է, երեխայքեցեք...

Նա ուշադիր զննեց տղաների դեմքերը, ապա ժամացույցին նայելով թափով բացեց ավտոյի դռնակը։ Ջոկատավարն ու պիոներները իրար ընդհատելով սկսեցին ադմկել, որ իրենք կգան պարետատուն և հենց այստեղից ոտքով (կգա՞ մայորը ոտքով) կուղևորվեն դեպի «Տանկերի գերեզման» բլուրը։ Իսկ եթե մայորն ուզում է տեսնել նրանց դպրոցի նոր շենքը, պիոներական այգին ու սենյակը, ապա...

— Մի խոսքով՝ թմբկահարելով կգաք այստեղ, իսկ հետո՝ կորոշենք,— մի ոտքը ներս դնելով ավտոմեքենա նրանց շաղակրատանքը ընդհատեց մայորը։— Ոտքով էլ կարելի է, ինչո՞ւ չէ. նույնիսկ հաճելի է։

— Լա՛վ, շա՛տ լավ,— բացագանչեցին պիոներները և վազեցին դեպի դպրոց։

## 2.

— Այս բլրի լանջերին մեր հրետանային գունդն էլ է կռվել։ «Տանկերի գերեզման» մեր դրած անունն է...

Այսպես սկսեց մայորն իր պատմությունը, երբ պիոներական ջոկատը հասավ ցածրադիր բլրի կատարին և անխոս նայում էր շուրջը։

— Այս լանջը մեր գնդում «Բաղանոլի լանջ» էին անվանում...

Եվ նա պատմեց հուզիչ մի պատմություն պատանի հրետանավորի մասին...

194... թվականի մարտ ամսի մի գիշեր հրետանային գունդը նոր դիրքեր գրավելու հրաման ստացավ։ Գնդի շտաբում կարճառև

խորհրդակցություն եղավ։ Հետո հրամանատարները մեկնեցին տեղերը, տագնապով վեր կացրին բոլորին։ Մարտիկներն իսկույն երթային կարգի բերեցին հրանոթները, արկերով լիքը ծանր արկղները բարձեցին ավտոմեքենաների վրա և, ամպամածությունից ավելի թանձրացած, խավարի միջով սլացան առաջ։

Կես ժամ հետո մարտկոցները տեղ հասան։ Առաջին մարտկոցը, որտեղ Բազանովն էր, դասավորվեց այն անտառի եզրին, բլրի ստորոտում։ Տեղեկություններ կային, որ այս գյուղակից, որի ավերակների մոտ կանգնած ենք հիմա, առավոտյան պետք է սկսվեր թշնամու տանկային գրոհը։

Մարտիկները հրանոթների համար ծանծաղ դիրքեր փորեցին, արկերի տեղեր, իրենց համար՝ նեղ փոսեր, որ գնդակոծության ժամանակ պաշտպանվեն և սպասում էին հրամանի։

Գիշերը ժամը երկուսին դասակների հրամանատարները ավագ լեյտենանտ Ֆրոլովին զեկուցեցին, որ ամեն ինչ պատրաստ է։

— Նշանակեցեք ժամապահներ, իսկ մյուսները թող հանգստանան. աչալուրջ եղեք։

Հրամանատարները մի անգամ էլ ստուգեցին իրենց դասակները։

Հրանոթներից մեկի մոտ դասակի հրամանատարը նկատեց Կոլյա Բազանովին։

— Ո՞վ է գալիս,— ցածրաձայն հարցրեց պատանին։

— Ես՛ եմ, Կոլյա՛։

Հրամանատարը նրան չհարցրեց, թե հո չի՞ վախենում, չի՞ մրսում կամ մի ուրիշ բան։ Նա գիտեր, որ գնդի որդի Կոլյա Բազանովը կպատասխաներ.

— Ամեն ինչ կարգին է, ընկե՛ր կրտսեր լեյտենանտ։

Եվ գրեթե միշտ այդպես էր լինում։ Կոլյան վաղուց անտարբեր էր դարձել մարտերի շաչ ու շառաչին, ականների ու արկերի պայթյուններին։ Նա տեսել էր, թե ինչպես իր ավագ ընկերները շատ անգամ ուշադրություն չէին դարձրել բեկորների սուլոցին, գնդակների ճռճռոցին և ինքն էլ սառնարյուն էր դարձել։ Հիմա նա քմծիծաղով էր հիշում, թե ինչպես ինքը ցնցվում էր առաջին կրակոցներից, տանկեր տեսնելիս... Իսկ երբ առաջին անգամ վիրավորվեց, բավականին վախեցավ։ Սևաստոպոլի մոտ էլ պատանին ցույց տվեց, որ կարող է մարտ մղել մեծերի հետ հավասար։ Հենց այդտեղ էլ նա վիրավորվեց։

Դրանից հետո Կոլյային փորձել էին շտաբում գործի դնել, բայց նա ինքը ցանկացել էր գնալ մարտկոց, թեկուզ որպես հինգերորդ համար։ Հետախուզման դասակ էլ չգնաց։ Նրան գրավում էին հրանոթները, նրանց հզոր ուժը, զարմանալի տեխնիկան։

Եվ այժմ նա ժամապահ էր, իսկ մյուսները քնել էին։

Քայլում էր Կոլյան հրանոթի շուրջը, երբեմն կանգ էր առնում, տեսողությունը լարելով նայում խավարին, լսում խոշոր գնդացիրների կոնչյունը, հատ ու կենտ կրակոցները և երազում, որ պատերազմից հե-



տո ուսումը կշարունակի և տեխնիկ կդառնա։ Թե ինչի տեխնիկ՝ կարևոր չէ։ Լսում էր նա հոգնած զինվորների շնչառությունը և հիշում դպրոցական ընկերներին։ Նա հիշողությամբ գնահատում էր ամեն մեկին և որոշում, թե նրանք ինչպես կվարվեին, եթե



կարճափող հրանոթներով այդ խաչակիր տանկերը գային նրանց վրա...

### Յ.

Դեռ լույսը չէր բացվել, որ երկինք սլացավ հակառակորդի ազդանշանային հրթիռը։ Թշնամին հրետանային ուժեղ կրակ սկսեց։ Արկերը պայթում էին ամեն տեղ։ Նրանց որոտը տասնապատիկ արձագանքով կրկնվում էր անտառում։ Դարավոր ծառերը պատառ-պատառ էին լինում ու ճարճատելով ընկնում էին մյուս ծառերի վրա կամ տապալվում գետին։ Մարտկոցի չորս կողմը ժայթքում էին ձյան, ցեխի և չոր փշատերևի շատրվաններ ու փլչում. նրանց տեղում մնում էին խորը ձագարներ։ Բայց հակատանկային հրետանին այդ կրակին չպետք է պատասխաներ. կմատներ իր տեղը։ Թշնամու հրետանին կջախջախեր նրան և տանկերի ու հետևակի համար ճանապարհ կբացեր։ Մարտկոցի խնդիրն էր «դիմավորել» տանկերը և չթողնել, որ նրանք անցնեն մեր առաջավոր գիծը։

Հրետանային գնդակոծությունը դադարեց։ Բլրի լանջին երևացին առաջին տանկերը։

— Դեպի հրանոթնե՛րը,— հնչեց հրամանը։

Արդեն արթնացած մարտիկները դուրս թռան փոսերից և անմիջապես գրավեցին իրենց տեղերը։ Մարտն սկսվեց։

Բաղանովի հրանոթն ամենաաջն էր։ Նրա կողմն էին գալիս երկու տանկ և մի ինքնագնաց հրանոթ։ Այդ հրանոթը տանկերը պաշտպանում էր մեր հրետանու կրակից։ Մնացած տանկերն էլ խոյացան մարտկոցի մյուս հրանոթների վրա։

Տանկերի շռինդը, հրանոթների կրակոցները, արկերի պայթյունները, մեր հրետանու որոտը, ծառերի ճարճատյունը, ահավոր արձագանքը անտառում և ձորակներում... այս բոլորն այնպիսի խլացուցիչ աղմուկով էին լցրել մարտի դաշտը, որ կարծես սարեր ու ձորեր փուլ են գալիս, իրար խառնվում...

Մարտկոցի վրա արշավող տասը տանկից յոթը խարույկներ դարձան ու ճաթճաթելով վառվում էին։ Մնացած երեքը փախան, մեկն առանց աշտարակի, մյուսը ծակծկված, երրորդը «հագալով ու փռշտալով»։ Ինքնագնաց հրանոթների դրությունն էլ լավ չէր։

— Այդ մարտից հետո մարտկոցից ողջ մնաց միայն Բաղանովի հրանոթը. մնաց, բայց ոչ լրիվ կազմով։ Նշանառու Դենը ծանր վիրավորվեց, երկրորդ համար Նիտարենկոն սպանվեց... Մի խոսքով հրանոթի մոտ մնացին միայն քառասունամյա Թումանյանն ու տասնվեց տարեկան Կոլյա Բաղանովը...

Կատաղի գրոհը վերջացավ։ Շուրջն ամեն ինչ լռեց։ Անտառի ողջ մնացած ծառերը սոսափում էին, թշնամու տանկերը ծխում էին։ Վաղ գարնան սառը քամին ճոճում էր ձյունից դուրս ցցված ինչ-որ ցողուններ։ Բուժակներն ու քույրերը տանում էին վիրավորներին...

Երկրորդ գրոհի ժամանակ էր, որ այդ պատանին հայտնի դարձավ...

Կոլյա Բաղանովը ոչ իր արտաքինով էր աչքի ընկնում, ոչ էլ որևէ արտակարգ բանով։ Սովորական մի տղա էր, փոքրիկ, կարմրաթուշ, քիթը ցից։ Խոսում էր դանդաղ, առանց ձայնը բարձրացնելու։

Եվ ահա Թումանյանն ու Բաղանովը մտնում են մի փոս և սպասում, թե ինչ կլինի հետո։ Ականջները ձայնի, կամաց-կամաց մաքրում են ավտոմատները և նոր սկավառակներ ամրացնում։ Կուզենային զրուցել, բայց անասելի հոգնել էին։ Լուռ էին, որովհետև ամեն ինչ պարզ էր. կսպասեն, մինչև քարշիչը կգա, կկցի հրանոթն ու կտանի անտառի մյուս կողմը։

Երբ Թումանյանը գլուխը մեկ էլ հանում է փոսից ու տեսնում, որ ահա երկու «Վագր» էլ են գալիս իրենց վրա, արմունկով հրում է ննջող Կոլյային.

— Կո՛լյա, որդի՛ս, «Վագրեր» են գալիս...— ասում է և ավտոմատը պինդ բռնած դուրս սողում։

— Ի՞նչ վագրեր, ո՞րտեղից,— սթափվում է Կոլյան ու նետվում հրանոթի կողմը։ Մի րոպեում տնտղում է հրանոթի սարքերը, նայում է արկերի փոսի կողմը և կանչում.

— Արկեր կան, պապա՛շա, հրանոթն էլ սարքին է...

— Կռվե՛նք, ուրեմն,— հիացած նայելով պատանուն ասում է Թումանյանը։

Կոլյան նայում է շուրջը։ Նա տեսնում է թիկունքում անդադար պայթող արկերն ու ականները։ Նա տեսնում է, որ մյուս մարտկոցների ողջ մնացած հրանոթներն էլ են մեկ-մեկ կրակում հատ ու կենտ տանկերի վրա։ Տանկերն էլ են սկսում կրակել։ Պատանու ուղեղում կայծակի պես փայլատակում է մի միտք՝ «թշնամու գնդակը փախչողին ավելի շուտ է գտնում»։

— Կռվենք, մինչև որ...— վճռում է Կոլյան ու կռացած վազում արկղների կողմը։ Նա հիշում է հերոս Մատրոսովին, խիզախ կոմերիտականներին...

Թումանյանը նստում է նշանառուի տեղը, կռանում դիտակի վրա և ձեռքը դնում թափանիվին։

— Դե՜, արծվի՜կս, արկ հասցրու...

Կոլյան վազեվազ մի քանի արկ է հասցնում հրանոթի լաֆետի մոտ, ապա վերցնում է մի արկ ու հրելով փողի մեջ, բացագանչում է.

— Խփի՛ր, դրանց, պապա՜շա... կրա՛կ...

Թումանյանը սեղմում է ձգանը։ Հրանոթը ցնցվում է և շառաչյունով դուրս նետում արկը։ Հեքիաթային վիշապի պես ծուխ ու բոց ժայթքող տանկը հանկարծ մի կողմ է շպրտում ջարդված թրթուրը և տեղում պտույտ գործում։ Տանկի վրայից ցած թռած զինվորները փռվում են ցեխի մեջ ու առանց նշան բռնելու կրակում։

Կոլյան տալիս է երկրորդ արկը, իրեն գցում փոսն ու ավտոմատից մի քանի կրակահերթ բաց թողնում թշնամու զինվորների վրա։ Երբ տեսնում է, որ տանկային դեսանտը կպել է գետնին, դուրս է թռչում ու շտապում Թումանյանին օգնելու։

— Ա՜խ, մի հրանոթ էլ լինե՜ր...— հերթական արկը մղելով փողի մեջ ասում է Կոլյան։

Այդ արկը խոցում է երկրորդ տանկի կողը, իսկ հետևյալը վառում է նրա բենզինի բաքը։ Հինգերորդ արկը տալուց հետո, Բաղանովը նորից ցատկում է փոսի մեջ և անընդհատ կրակում արդեն ձախ կողմից եկող զինվորների վրա։ Նրանցից մի



երկուսն ընկնում են, իսկ մյուսները շարունակում են սողալ դեպի հրանոթը:

Թումանյանն էլ անգործ չի նստում: Հրանոթի վահանի ետևը թաքնված նա սողացողներին գնդակներով «կարում է» գետնին:

Երբ մի անգամ էլ արկը տալուց հետո Կոլյան «կրակ» է գոչում, տեսնում է, որ Թումանյանը հենվել է փակաղակի վրա և անշարժացել: Պատանին ինքը հրանոթի փողն ուղղում է երկրորդ տանկի տակից դուրս թռած տանկիստների վրա և կրակում...

— Ես չեմ հիշում, թե քանի րոպե էր տևել այդ մենամարտը, բայց երբ մենք հերոսներին օգնության եկանք, հրանոթի ջարդված անիվի մոտ պառկած էր Կոլյա Բազանովը: Նրա քունքի վերևից արյուն էր հոսում, իսկ բամբկուն բաճկոնի ձախ ուսը պատռված էր: Երբ բուժակն ինձ հայտնեց, որ Կոլյան կենդանի է, ուրախությունից մոտ վազեցի և համբուրեցի հերոսին...

Մինչ այդ անշարժացած պիոներները հանկարծ իրար անցան, աղմկեցին ու սկսեցին հարցերով ռմբակոծել մայորին.

— Ո՞րտեղ է նա...

— Կարելի՞ է նամակ գրել...

— Նամակ գրե՞լ, ինչո՞ւ չէ, կարելի է, եթե լավ բաներ գրեք: Ինքը մինչև հիմա էլ ինձ նամակ է գրում: Սովորում է գյուղմեխանիզացիայի դպրոցում և շուտով կոմբայնավար կդառնա:

— Երևի լավ է սովորում,— երազկոտ նայելով Բազանովի հրանոթի դեռևս նշմարվող դիրքի հողաթմբին, ասաց ջոկատավարը:

— Հրաշալի՜,— ոգևորված ասաց մայորը...— Եթե ուզում եք՝ նրա նամակները ցույց կտամ. ոչ մի տառասխալ, այո՛... Սովետական Միության Հերոսի կոչում տվին նրան դեռ հոսպիտալում եղած ժամանակ... Այժմ էլ հերոս է ուսման մեջ... Ա՛յ թե կոմերիտական է, հա՜...

Վաղ գարնան երեկոն շտապ մթնեցնում էր երկինքը: Քաղաքում տեղ-տեղ արդեն վառվում էին լույսերը: Պիոներներն աշխույժ զրուցելով իջնում էին «Տանկերի գերեզման» բլրի լանջով: Պատանիների անհամար հարցերին պատասխանելով, նրանցով շրջապատված իջնում էր նաև մայորը:

# ԻՄ ՍԻՐԱԾ ԳՈՒՅՆԸ

Մն. ԹԱՐՅԱՆ

Նկ. Ռ. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆԻ

Մեր տուն հյուր էր եկել քեռիս,
Ինձ բերել էր նվերներ.
Մի զույգ կոշիկ երկարավիզ
Ու մանկական նոր գրքեր:
Նա բերել էր նկարչական
Մի տուփ մատիտ վեց գույնի.
Չափ չկար իմ ուրախության.
Որքա՞ն կուզես նկարիր:
Սիրում եմ ես մեր գարունը՝



Փռված նման մի գորգի.
Թե չունենամ կանաչ գույնը,
Ո՞նց նկարեմ դաշտ, այգի:
Կապույտ գույնն էլ շատ եմ սիրում,
Նա էլ է ինձ հարկավոր,
Երբ մեր գետերն եմ նկարում,
Կամ ջրանցքները բոլոր:
Բայց սիրում եմ ես ավելի
Կարմիր գույնը հուրհրան,
Առանց պայծառ կարմիր գույնի
Նկարն ինչի՞ է նման:
Իրեն ուզում է նկարեմ,
Մեր պիոներ Սահակը.
Կարմիր գույնը երբ չունեմ,
Ո՞նց նկարեմ վզկապը:
Կամ թե տոն է մայիսմեկյան,
Երբ է ձգվել շարք առ շարք,
Կարմիր գույնը թե չունենամ,
Ո՞նց նկարեմ դրոշակ:
Նկարում եմ Կրեմլը մեր,
Որ տալիս է կյանք, արև,
Առանց կարմրի ո՞նց նկարեմ
Նրա աստղը հնգաթև:
Դրա համար՝ նվեր բերած
Մատիտներից բազմագույն,
Ամենից շատ, ամենից շատ
Կարմիր գույնն եմ ես սիրում:

# ԼԵՆԻՆԳՐԱԴ

Գ. ՏՐՈՖԻՄՈՎ

(250-ամյակի առթիվ)

Ֆոտո Ն. ԿԱՐԱՍՅՈՎԻ

### Քաղաքի հիմնադրումը

Ջրառատ Նևան, կապույտ ժապավենի նման Լադոգա լճից դեպի Ֆիննական ծոցը իջնելով, քաղաքը բաժանում է 101 կղզու։ Դրանցից մեկի՝ Զայաչի կղզու վրա 250 տարի առաջ, Պետրոս Առաջինի հրամանով, հիմնադրվեց մի նոր քաղաք, որին տրվեց Սանկտ-Պետերբուրգ անունը։

Քաղաքի շինարարությունն սկսվեց Պետրոպավլովսկ ամրոցի կառուցմամբ, որի հիմքը դրվեց 1703 թվականի մայիսի 27-ին։ Պետրոսն շտապում էր ամրություններ ըստեղծել շվեդներից նվաճած հողերում։ Այս գործի համար նա չէր խնայում ոչ ուժ, ոչ միջոցներ, ոչ էլ հազարավոր մարդկանց կյանքը։

Ռուսական պետության նոր մայրաքաղաքը, որ հիմնադրեց Պետրոս Առաջինը, օրեցօր ծաղկում էր։ Լենինգրադը Մեծ Հոկտեմբերի օրրանն է։ Այստեղ սկսեց իր ռևոլյուցիոն գործունեությունը Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Նրա և նրա հավատարիմ զինակից Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի գլխավորությամբ աշխատավորները տապալեցին ատելի բուրժուազիային և, աշխարհում առաջին անգամ, ստեղծեցին աշխատավորների իշխանություն։

### Ճառ զրահամեքենայից

Գեղեցիկ է Լենինգրադը գարնանային իր զուգսերով։ Նույնիսկ քաղաքի ամենամեծ փողոցը՝ Նևսկի պողոտան գարնանային պայծառ արևի շողերի տակ թվում է ավելի լայն, ավելի ընդարձակ։ Ահա կարծես երկնքի կապույտ կտավի վրա ուրվագծվում է քաղաքի ամենագեղեցիկ շենքերից մեկի՝ Ծովային վարչության վեհաշուք շպիլը։ Ձախ կողմում վեր է խոյանում Իսահակի ոսկեգմբեթ տաճարը։ Անցնելով թաղամասերը, մենք սլանում ենք դեպի Ֆինլանդական կայարանը։

Մեր դիմաց Վլադիմիր Իլյիչ Լենինի բրոնզե արձանն է։ Նրա աջ ձեռքը ասես մարտակոչի համար վեր է պարզված։ Այդ ձեռքն ասես ողջունում է մեզ, ինչպես 1917 թվականի ապրիլի երեքին Վլադիմիր Իլյիչը ողջունում էր հազարավոր բանվորների, զինվորների ու նավաստիների, որոնք եկել էին նրան դիմավորելու։

Երեխանե՛ր, ձեզանից շատերը գիտեն, որ Լենինը երկար ժամանակ ստիպված էր ցարական կառավարության հետապնդումից թաքնվել արտասահմանում։ Երբ 1917 թվականի փետրվարին ցարը տապալվեց, Լենինը վերադարձավ Պետրոգրադ։

Եկեք փորձենք պատկերացնել պատմական այդ մոմենտի տեսարանը։ Լուսարձակների հզոր սլաքները ծվատում են իրիկնային մառախուղը, լուսավորում բոլորի բերկրալից դեմքերը։ Բոլոր դիմավորողներն ուզում են մոտիկից տեսնել Վլադիմիր Իլյիչին, լսել նրա ձայնը, խորհուրդ և ցուցմունք ստանալ։



Հուշարձան Ֆինլանդական կայարանում։ Այստեղ եկավ Վ. Ի. Լենինը Ռուսաստան վերադառնալուց հետո 1917 թ. ապրիլի 3-ին։

Հրապարակում չգտնվեց մի ամբիոն, որտեղից կարողանար ելույթ ունենալ Վ. Ի. Լենինը։ Լենինը Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի հետ միասին բարձրացավ զրահամեքենայի վրա, որի աշտարակից հնչե-

ցին լենինյան իմաստուն խոսքերը. «Կեցցե՛ Սոցիալիստական ռևոլյուցիան»։

Ֆինլանդական կայարանի մոտ գտնվող հրապարակից Վլադիմիր Իլյիչ Լենինը զրահամեքենայով, ցուցարարների հոծ բազմության ուղեկցությամբ, գնաց Կշեսինսկայայի նախկին պալատը։ Եկեք մենք էլ առաջ շարժվենք այդ մարշրուտով։

## Բոլշևիկների շտաբը

1917 թվականին Կշեսինսկայայի նախկին պալատում գտնվում էր բոլշևիկների պարտիայի Կենտրոնական Կոմիտեն։ Այստեղ կազմակերպվեց Վլադիմիր Իլյիչի և նրա բարեկամների ու մտերիմ ընկերների հանդիսավոր հանդիպումը, որոնց գլխավորում էր Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը։ Հավաքվածների մոտ Վ. Ի. Լենինը ելույթ ունեցավ, բացատրելով իր հայացքները ընթացիկ դրության վերաբերյալ։ Իլյիչը մի քանի անգամ դուրս եկավ պատշգամբ և բոցաշունչ ճառեր արտասանեց բազմահազար աշխատավորների բազմության առաջ, որոնք նրան ուղեկցել էին։



Պատմական «Ավրորա» նավի մոտ։

Սկսվեց ռևոլյուցիոն լարված աշխատանքը։ Այդ օրերին Լենինին կարելի էր տեսնել ամենուրեք, ժողովրդի հետ, ժողովրդի մեջ։ Բայց Վ. Ի. Լենինը ժողովրդի հետ խոսում էր, խորհրդակցում ոչ միայն ժողովների և միտինգների ամբիոններից։ Գրեթե ամեն օր նրա հոդվածները տպագրվում էին բոլշևիկյան «Պրավդա» թերթում։ 1917 թվականի ապրիլից մինչև հուլիսը նա գրել է ավելի քան հարյուր հիսուն հոդված և մի քանի բրոշյուր։

1917 թվականի հուլիսի 3-ին բուրժուական ժամանակավոր կառավարությունը գնդակոծեց աշխատավորների խաղաղ ցույցը։ Երկրում սկսվեց արյունալի տեռոր։ Հայտարարություն էր արված Վ. Ի. Լենինին ձերբակալելու մասին։ Աշխատավորների առաջնորդը ստիպված էր դարձյալ թաքնվել ընդհատակում։

## Ընդհատակը Ռազլիվում

Մի առ ժամանակ թողնենք Լենինգրադի սահմանները և գնանք Ռազլիվ կայարանը, որտեղ Ի. Վ. Ստալինը հուսալի կերպով թաքցրել էր Վլադիմիր Իլյիչին ժամանակավոր կառավարության լրտեսների հետապնդումներից։

Ռազլիվը Լենինգրադի ամենագեղատեսիլ արվարձաններից մեկն էր։ Այստեղ հուլիսի 25-ի գիշերը ժամանեց Վ. Ի. Լենինը։ Այստեղ նա թաքնվեց մարագներից մեկի ձեղնահարկում, ուր մենք հիմա ձեզ հետ միասին կգնանք։

Մարագի ձեղնահարկը կիսախավար է և դատարկ։ Մի փոքրիկ սեղան, մի խուրձ խոտ. ահա այն ամբողջը, որից օգտվել է Իլյիչը։

Մարագում Վլադիմիր Իլյիչը երկար չթաքնվեց։ Այստեղ մնալն անվտանգ չէր։ Իբրև հնձվոր նա տեղափոխվեց Ռազլիվ լճի մյուս կողմում գտնվող ճահճոտ մարգագետինները։

Վլադիմիր Իլյիչի ընդհատակյա աշխատանքի վերջին շրջանը թերևս ամենադժվարինն էր։ Երկրում օրեցօր հասունանում էր ռևոլյուցիան, իսկ մեծ առաջնորդը ստիպված էր թաքնվել։ Բայց Լենինը շարունակում էր անդուլ կերպով աշխատել, ղեկավարել բոլշևիկների պարտիան՝ իր հավատարիմ զինակիցների միջոցով, որոնց գլխավորում էր ընկեր Ստալինը։

Պետրոգրադում գումարվեց բոլշևիկների պարտիայի 6-րդ համագումարը, որի անմիջական ղեկավարը Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինն էր։ Նա շարունակ կապ էր պահ-

*պանում Վլադիմիր Իլյիչի հետ։ Լենինի ցուցումով համագումարն ընդունեց չափազանց կարևոր որոշում՝ ժողովրդին զինված ապստամբության նախապատրաստելու մասին։*

*Կոճղի վրա նստած, որը մինչև մեր օրերն էլ պահպանվել է, Վլադիմիր Իլյիչը գրեց «Պետություն և ռևոլյուցիա» գրքի մեծ մասը, ավելի քան 60 զանազան հոդված։*

*Վլադիմիր Իլյիչը Ֆինլանդիայից, որտեղ նա ապրում էր Ռազլիվից հետո, գաղտնի կերպով Պետրոգրադ վերադարձավ միայն հոկտեմբերի 20-ին և իսկույն անմիջական մասնակցություն ունեցավ զինված ապստամբության նախապատրաստման գործում։ Հոկտեմբերյան զինված ապստամբությունն սկսվեց հոկտեմբերի 24-ին։ Կենտրոնական Կոմիտեի կողմից Վլադիմիր Իլյիչը կանչվեց Սմոլնի և իր ձեռքը վերցրեց ամբողջ ղեկավարությունը։*

**Ռևոլյուցիայի շտաբը**

*Հոկտեմբերյան օրերին Սմոլնին արտասովոր տեսք էր ստացել։ Նրա լայն դռներից շարունակ ներս էին մտնում գնդացրային ժապավեններով գոտեվորված մարդիկ։ Ցուցմունք ստանալով, նրանք վայրկենապես վազում էին հրապարակ։ Լսվում էին հրահանգներ։ Խարույկների հրացոլքի տակ երևում էին զինվորների, նավաստիների, կարմիրգվարդիականների մռայլ դեմքերը։ Հրահանգ լսելու պես նրանք շարվում էին և գնում մարտի՝ կատարելու Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի հրամանները։*



Այս շենքում սկսեց իր աշխատանքը պարտիայի 6–րդ համագումարը։
Այժմ այստեղ Վիբորգյան կողմի Մայիսի մեկի անվան ակումբն է։

*Նույնպիսի աշխուժություն էր տիրում նաև Սմոլնիի ներսում։ Այդտեղից Լենինը «Ավրորա» հածանավի ծովայիններին հրաման տվեց մտնել Նևա և նշանառության տակ վերցնել Ձմեռային պալատը։ Հոկտեմբերի 25-ի լույս 26-ի գիշերը ռևոլյուցիոն բանվորները, զինվորները և նավաստիները կատարելով Լենինի հրամանը, սկսեցին գրոհը ժամանակավոր կառավարության վերջին ամրոցի դեմ։*

*Սմոլնիում Լենինը և Ստալինը օրեր ու գիշերներ էին անցկացնում։*

*Պատմական շենքի երկրորդ հարկում պահպանվել է այն սենյակը, որտեղ ապրել են Լենինը և Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայան։*

*Սենյակում ամեն ինչ խնամքով պահպանված է այնպես, ինչպես այդ եղել է ավելի քան 35 տարի առաջ։ Թվում է, թե Վլադիմիր Իլյիչը մի րոպեով է դուրս եկել և շուտով կվերադառնա։ Ահա կլսվեն նրա շտապ քայլերը, և նա սենյակ կմտնի ուրախ, առույգ, հայրական բարի ժպիտը դեմքին։*

**Գրոհը**

*Շարունակ նորանոր ջոկատներ են գալիս։ Պետրոպավլովսկի ամրոցի վերևում ահա վառվեց մի կարմիր լապտեր։ Դա գրոհի ազդանշանն է։ Թնդաց «Ավրորայի» համազարկը, ազդարարելով նոր դարաշրջանի՝ Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի դարաշրջանի սկիզբը։ Գրոհն սկսվեց...*



# ԱՅՆ ՕՐԵՐԻՆ

Ն. ԲԱՐԱՄՅԱՆ

Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Լենինգրադ... Ով չգիտի այդ քաղաքի մասին, ում հայտնի չէ նրա փառքը: Չէ՞ որ հենց այստեղից, բովանդակ երկրով մեկ արձագանք տվավ «Ավրորայի» հրետանային որոտը, աշխարհին նոր դարաշրջանի ծնունդը ավետելով: Բայց միայն դրանով չէ, որ փառաբանվում է հերոս քաղաքը:

Լենինգրադի պատերի տակ մղված գոռ մարտերում ծնվեց Սովետական Բանակը:

Լենինի քաղաքի մարտական սխրագործությունները անհաշիվ են: Բայց նրա հերոսությունը արտակարգ ուժով երևաց Հայրենական Մեծ պատերազմի ծանր օրերին: Նա առաջինն էր, որ անխորտակելի պատնեշի պես կանգնեցրեց ֆաշիստական հորդաներին:

Ծանր, շատ ծանր էր այդ օրերին լենինգրադցիների վիճակը: Քաղաքն անդադար գրոհում էին հիտլերյան անթիվ դիվիզիաները, հազարավոր տանկեր ու սավառնակներ: Թշնամու դեմ կռվում էր ոչ միայն բանակը, այլև քաղաքի բոլոր բնակիչները: Արկերի պայթյունները միախառնվում էին գործարաններում և ֆաբրիկաներում գործող հաստոցների շռնդյունին: Ս. Մ. Կիրովի անվան փառապանծ գործարանի բանվորները տանկեր էին կառուցում և հաճախ իրենք էլ ճակատ էին մեկնում իրենց իսկ կառուցած մարտական տանկերի վրա:

Ռազմաճակատ մեկնած հայրերի ու եղբայրների հաստոցների մոտ կանգնում էին կանայք ու դպրոցականները: Եվ աշխատում էին նրանք հերոսների նման: Երբեմն 15 տարեկան պատանին դառնում էր զինագործարանի վարպետ և հասակավոր բանվորները, որպես հարգանքի նշան դեպի փոքրիկ մասնագետը, նրան անուն հայրանունով էին կոչում: Հազարավոր պիոներներ կամովին ստանձնում էին շենքերի հակահրդեհային պաշտպանության պատվաբեր, բայց ծանր ու պատասխանատու գործը:

Լենինգրադը դարձավ ռազմաճակատ: Կես միլիոն կանայք, դպրոցականներ, ուսանողներ մեկնեցին քաղաքի շրջակայքը ամրություններ կառուցելու: Նրանք աշխատում էին ֆաշիստական հրետանու և ավիացիայի կատաղի կրակի տակ:

1941 թվականի աշնանը ֆաշիստները պաշարեցին Լենինգրադը: Նրանք ուժեղացրին քաղաքի վրա տեղացող կրակը: Քաղաքում սպառվել էին վառելանյութի և հացի պաշարները: Կանգ առան տրամվայները: Ավերվեց ջրմուղը: Խախտվեց հեռախոսային կապը: Լենինգրադցիները ռազմաճակատի համար ռազմամթերք էին արտադրում ցուրտ ցեխերում: Նրանց հերոսությունը հիացմունք էր պատճառում բոլորին:

Լենինգրադը թշնամու առաջ ծունկի չեկավ: Թշնամին չկարողացավ նրան մայր երկրից կտրել:

«Մենք քեզ հետ ենք, թանկագին Լենինգրադ», գրում էին Մոսկվայից, Բաքվից, Թբիլիսիից, Երևանից: «Քեզ ենք նվիրում,

սիրելի Լենինգրադ», այս լոզունգով երկրի բոլոր ծայրերից սննդամթերք, հանդերձանք էր ուղարկվում լենինգրադցիներին՝ Լադոգա լճի սառույցի վրա կառուցված միակ ճանապարհով, որն իրավամբ կոչվեց «Կյանքի ուղի»: Հազարավոր ռումբեր գցեցին գերմանացիները այդ սառցե անցուղու վրա: Բայց «Կյանքի ուղու» ավերված հատվածները ակնթարթորեն վերականգնվում էին, կամ կառուցվում նոր անցուղիներ:

Լենինգրադի պաշտպանության դիրքերում մարտնչում էին Սովետական Միության բոլոր ժողովուրդների քաջարի զավակները: Լենինգրադի համար մղված մարտերում հավիտենական փառքի պսակով զարդարեց իրեն նաև հայ ժողովրդի պանծալի զավակ Նելսոն Ստեփանյանը:

Շատ տառապանքներ կրեց Լենինգրադը: Ահա թե ինչ էր գրում պաշարված Լենինգրադից ռազմաճակատում գտնվող իր հորը՝ Ստեփան Լեբեդևին նրա տասներկու տարեկան տղան.

«Հայրիկ, դու երևի չգիտես, որ մեզ մոտ շատ ծանր անցավ ձմեռը: Ես քեզ գրում եմ ամբողջ անսքող ճշմարտությունը, որ մայրիկը վախճանվեց փետրվարի 14-ին: Նա խիստ հյուծված էր, վերջին օրերը նույնիսկ չէր կարողանում կանգնել: Հայրիկ, անյունը հանձնեցի մայր հողին: Հայրիկ, դու ինձ համար մի՛ անհանգստանա, մեր վիճակն արդեն մի քիչ թեթևացել է. ես առույգ եմ. սովորում եմ տանը, ինչպես որ դու ինձ կարգադրել ես, և աշխատում եմ: Մենք օգնում ենք մեքենաներ վերանորոգողներին: Իսկ Լենինգրադը նրանք չեն գրավել և չեն էլ գրավի: Դու, հայրիկ, երջանիկ ես, որ ի վիճակի ես խփել նրանց: Վրեժխնդիր եղիր մորս համար...»

Լենինգրադի երեխաներից շատերը կորցրին իրենց մայրերին: Բայց վրեժխնդրության ժամը եկավ: Ընկեր Ստալինի հրամանով 1943 թվականի հունվարին Լենինգրադի և Վոլխովի ռազմաճակատների ռազմիկները ճեղքեցին թշնամու ամրությունները, ազատագրեցին պաշարված Լենինգրադը: Նրանք հակահարձակման անցնելով, քշեցին թշնամուն դեպի Արևմուտք:

Եվ երբ ավարտվեց հաղթական պատերազմը, լենինգրադցիները ձեռնամուխ եղան իրենց հարազատ քաղաքի վերականգնմանը:



*Պալատի Հրապարակը. կենտրոնում Ալեքսանդրյան սյունը:* Ֆոտո Գ. ՍԱՖՈՆՈՎԻ

Օրեցօր ավելի ու ավելի գեղատեսիլ է դառնում սոցիալիստական ռևոլյուցիայի օրրանը, ռուսական փառքի քաղաքը՝ Լենինգրադը:

Լենինգրադի պաշտպանների, նրա գործարանների ու ֆաբրիկաների ստախանովականների մեծ օրինակի վրա սովետական երիտասարդությունը, մեր մատաղ սերունդը սովորում է լինել քաջարի, անհունորեն սիրել սոցիալիստական հայրենիքը:

# ՊԱՏՎՈՎ ԵՆ ԿԱՏԱՐՈՒՄ



*Ի. Վ. Ստալինի անվան գեղեցիկ պողոտան:* *Ֆոտո Գ. ՍԱՖՈՆՈՎԻ*

Չորս տարի առաջ լենինգրադցիները նամակով դիմեցին սիրելի Ստալինին: Նրանք խոստանում էին իրենց քաղաքը դարձնել տեխնիկական առաջադիմության քաղաք, ապագա տեխնիկայի քաղաք:

Լենինգրադցիները պատվով են կատարում իրենց խոսքը: Նրանք երկրին մատակարարում են ամենակատարյալ մեքենաներ: Ի. Վ. Ստալինի անվան գործարանի հիդրոտուրբինները և Ս. Մ. Կիրովի անվան «էլեկտրոսիլա» գործարանի հիդրոգեներատորներն արդեն աշխատում են Ցիմլյանսկի հիդրոէլեկտրակայանում: Լենինգրադցիները կառուցել են աշխարհում ամենահզոր՝ 100 հազար կիլովատանոց տուրբինը և այժմ ստեղծում են մեքենաներ Կույբիշևի և Ստալինգրադի հիդրոկայանների համար, տեքստիլ արդյունաբերության բարդ սարքավորում, ապագա հզոր էլեկտրահաղորդման համար կաբել, քարշող տրակտորներ և ուրիշ շատ ամենաճշգրիտ, ամենակատարյալ մեքենաներ:

Լենինգրադի պիոներները և դպրոցականները երազում են ապագայում կառուցել նույնպիսի հիանալի մեքենաներ: Դրա համար նրանք դպրոցում համառորեն տիրապետում են գիտելիքներին, ընդլայնում, կատարելագործում են դրանք խմբակներում: Դրա համար նրանք ունեն բոլոր հնարավորությունները:

Լենինգրադի ամեն մի ռայոն ունի պիոներների տուն: Երեխաներն ունեն նաև իրենց պալատը, որը պարգևել են պարտիան և կառավարությունը 1936 թվականին: Միայն Ա. Ա. Ժդանովի անվան պիոներների պալատի տեխնիկական խմբակներում, իսկ դրանց թիվն ավելի քան 170 է, զբաղված են մոտ չորս հազար պիոներ, իսկ պալատի բոլոր խմբակներում՝ 14 հազար երեխա:

Լենինգրադի պիոներներն ու դպրոցականներն աճում են որպես մեծերի արժանավոր փոխարինողներ:

# ԱՆՀՈՒՆ ՍԵՐԸ

*Ստալին. որքա՜ն հարազատ է այս անունը սովետական ժողովրդի, ամբողջ աշխարհի աշխատավոր մարդկության համար...*

*1953 թվականի մարտի վեցի առավոտյան ռադիոն տխուր լուր հաղորդեց. Մեծ Ստալինի սիրտը դադարեց բաբախելուց: Ծանր լուրը աշխարհը ցնցեց, անհուն վշտով լցրեց Սովետական Միության մեծ ժողովրդի, դեմոկրատական երկրների ժողովուրդների և աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց սրտերը: Այդ այդ օրերին անսահման վիշտ ապրեցին նաև մեր մեծ Հայրենիքի, մեր ռեսպուբլիկայի հազարավոր մանուկներ ու դպրոցականներ. չէ՞ որ մեծ առաջնորդը ամենից շատ սիրում էր նրանց:*

*Ընկեր Ստալինի մահվան կապակցությամբ խմբագրությունը բազմաթիվ նամակներ է ստանում: Նամակներ են գրել Մարտունի գյուղի դպրոցի աշակերտ Ալբերտ Սարոյանը, Թալինի շրջանի Արագած գյուղի դպրոցից՝ Սաշա Գալստյանը, Ստեփանավանից՝ Աիդա Գրիգորյանը, Լենինականից՝ Ռոզա Ադամյանը և շատ ուրիշներ: Իջևանի շրջանի Աչաջուր գյուղի միջնակարգ դպրոցի*

*երրորդ դասարանի աշակերտ, ինը տարեկան Հուսիկ Օհանյանը գրում է.*

Մեր ուսուցիչ թանկագին,
Մեր հարազատ Ստալին,
Ինչո՞ւ դու շուտ հեռացար
Եվ մեզ թողիր վշտահար...

Կուզենայինք, Ստա՛լին մեծ,
Մեր կյանքը տալ քեզ նվեր,
Որ ապրեիր դու անվերջ
Կոմունիզմի երկրում մեր...

*Տխրությունը, որ սովորաբար խորթ է մեր մանուկներին, համակել է նաև փոքրիկ Հուսիկի մատաղ սիրտը։ Չկա այլևս ժողովուրդների բարի հայրը, աշխարհի ամենաիմաստուն մարդը, ամենահմուտ ղեկավարը և ամենամեծ զորավարը. բայց նա անմահ է, նա մեզ հետ է, միշտ մեր սրտերում։ Ընկեր Ստալինի հիշատակին նվիրած իր բանաստեղծության մեջ, դպրոցական Վարդգես Հայրապետյանը գրում է.*

Ո՛չ, նա չի մեռել, նա մեզ հետ է միշտ,
Եվ մեր սրտերում կմնա հավերժ,
Մեր առջևից նա քայլում է ընդմիշտ
Եվ կապրի անվերջ դարեր ու դարեր...

*Աշակերտ Պողոս Աբաջյանը գրում է.*

Վշտից այս, որ ամբողջ աշխարհը պատել է,
Անսահման ու անհուն վշտից այս,
Թվում է արևի ուժն անգամ հատել է,
Մառացել է երկինքը վրաս։
Բոլորի աչքերից արցունքը հորդում է,
Լալիս են սրտերը բոլորի,
Փակել է աչքերն իր նա, որ միշտ արթուն էր,
Նա, որ միշտ հսկում էր բոլորին։
Նա, որ մութ աշխարհը դարձրեց լուսավոր,
Անապատը դարձրեց այգի,
Նա, որ մեզ պարգևեց Հայրենիք մի հզոր
Ու փոխեց իմաստը մեր կյանքի։
Թվում է հանգել է, թվում է էլ չկա,
Էլ սիրտը նրա չի բաբախում,
Բայց միայն թվում է. նա ապրում է, նա կա՛,
Նա մեզ հետ է միշտ ու ամենուր։

*Պիոներներն ու դպրոցականները հաստատ համոզված են, որ Լենինի և Ստալինի ստեղծած պարտիան ամենակարող պարտիան է ամբողջ աշխարհում։ Նրանք գիտեն, որ մեր պարտիան Լենինի և Ստալինի դրոշով և նրանց գծած անշեղ ուղիով մեր երկիրը կտանի դեպի նորանոր հաղթանակներ, դեպի կոմունիզմ։ Այս միտքն է արտահայտում Ջիթհանքով գյուղի դպրոցի աշակերտ Սեդա Գրիգորյանը իր գրած ոտանավորի մեջ։*

Պարտիան մեր ունի պարզ, հստակ մի նպատակ,
Պարտիան մեր Հայրենի՛քը դարձնում է անխորտակ,
Անպարտելի է նա իր պողպատե կամքով,
Զոդված Լենինի և Ստալինի ձեռքով...

*Լցված այս հաստատ հավատով, մեր պիոներներն ու դպրոցականները խոսք են տալիս այսուհետև ավելի լավ սովորել, որպեսզի դառնան սովետական երկրի արժանավոր քաղաքացիներ։ Նրանք խոստանում են պատվով կատարել առաջնորդի պատգամները և ուսման բարձր ցուցանիշներով հավերժացնել մեծ Ստալինի անմահ հիշատակը։*



Պատանի քանդակագործը։
*Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ*

# ԻՎԱՆ ԻՎԱՆՈՎԻՉ ՊՈԼԶՈՒՆՈՎ

*Մ. ՄԱԴԱԹՅԱՆ*

*Նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ*

1736 թվականին զինվոր Իվան Պոլզունովն իր միակ որդուն, որի անունը նույնպես Իվան էր, հանձնեց Եկատերինբուրգ (Եկատերինսկ) փոքրիկ քաղաքի լեռնային դպրոցի լեզվաբանական բաժինը սովորելու: Այն ժամանակվա համար բացառիկ երևույթ էր, որ հասարակ զինվորի որդին դպրոցում ձրի սովորի:

Շուտով փոքրիկ Իվանը աչքի ընկավ իր լավ սովորելով: Նա ազատ խոսում էր լատիներեն և անգամ բանաստեղծություններ գրում: 1738 թվականի աշնանը փոքրիկ Իվանին փոխադրեցին թվաբանական բաժինը: Այստեղ նա պարապում էր Մագնիցկու «Թվաբանություն» դասագրքով, որով սովորել էր Մ. Լոմոնոսովը: Իվանն ուսումնասիրում էր մաթեմատիկա, ծանոթանում էր լեռնային աշխատանքներին, այն ժամանակվա մեքենաներին: Հետո նա ծանոթացավ դարբնոցի, ջրով պտտվող անվի, նրանով շարժվող շրջատող դազգահի, լծակների, ճախարակների և ընդհանրապես մեխանիկայի հետ:

Պոլզունովը հաճախ էր մտածում կրակի և մեծ կաթսայում եռացող ջուրը օգտագործելու մասին:

Մինչև 1747 թվականը Իվան Պոլզունովը աշխատում էր որպես «մեխանիկական աշակերտ», հետո նա տարբեր աշխատանքներ է կատարում հանքերում և այլ տեղերում: Դրա համար նա ստիպված էր լինում տեղափոխվել մի վայրից մի ուրիշը:

Երբ Պոլզունովը գործով մեկնեց Պետերբուրգ, եղավ թանգարաններում, Գիտությունների Ակադեմիայի գրադարանում: Նա ուզում էր տեսնել Պետրոս Առաջինի բերել տված «Հրե մեքենան», բայց դա վերցված էր:

Վերադառնալով Բառնաուլ, Պոլզունովը համառ կերպով սկսեց աշխատել գոլորշու միջոցով գործող մեքենա ստեղծելու ուղղությամբ: Վերջապես 1763 թվականի հունիսի 18-ին մեքենայի գծագրերը և նկարագիրը ուղարկվեցին Պետերբուրգ: Պոլզունովն ստացավ մեխանիկուսի կոչում և ճարտարապետ կապիտան-պորուչիկի աստիճան:

Մեծ դժվարություններով իր աշակերտներ Չերնիցինի, Լևզինի և ուրիշների հետ, Պոլզունովն սկըզբում կառուցեց չորս հարկանի փայտե մի տուն և հետո նրա մեջ պատրաստեց մի հսկա շոգեշարժ մեքենա: Մինչև 1765 թվականի հոկտեմբերի 7-ը նա փորձարկում էր մեքենան: Վերջապես պատրաստվեցին նաև այն փուքսերը, որոնցով «Հրե մեքենան» պետք է օդ մղեր ձուլարաններին: Բայց Պոլզունովը 1766 թվականի մարտի 16-ին վախճանվեց:

Նրա աշակերտները շարունակեցին նրա սկսած գործը և 1766 թվականի օգոստոսի յոթին մեքենան վերջնականապես գործի դրվեց: Նա օդ էր մղում երեք ձուլարանների հնոցների մեջ: Նրա գործելու ժամանակամիջոցում ձուլեցին 144.596 կիլոգրամ հանքանյութ, որից ստացվեց 240 կիլոգրամ արծաթ և մոտ 6 կիլոգրամ ոսկի: Հետագայում աղյուսները չդիմանալով հնոցի բոցի ջերմության ազդեցությանը,



այրվեցին. հնոցը փլվեց և մեքենան անուշադրության մատնվեց:

Մեզ են հասել Ի. Պոլզունովի մեքենայի բոլոր գծագրերը և նկարագրությունները: Բառնաուլի թանգարանում նույնիսկ մնացել է Պոլզունովի ձեռքով պատրաստած «Հրե մեքենայի» փոքրիկ մոդելը:

Ինչո՞ւմն է Պոլզունովի գյուտի մեծությունը:

Անգլիացի և ուրիշ գյուտարարների գոլորշիով գործող մեքենաները միայն մի մխոց ունեին և աշխատում էին ընդհատումներով: Պոլզունովն առաջինն էր, որ իր կաթսայի վրա դրեց երկու հսկայական գլան իրենց մխոցներով: Նրա մեքենայի յուրաքանչյուր գլանն ուներ երեք մետր երկարություն և մեկ մետր տրամագիծ: Մխոցներն աշխատում էին միաժամանակ, բայց հակառակ ուղղություններով, որով և նրա մեքենան կարող էր անընդհատ աշխատանք կատարել: Պոլզունովի մեքենան անընդհատ գործողության առաջին մեքենան էր: Միևնույն ժամանակ դա առաջին մեքենան էր, որով կարելի էր կատարել ամեն տեսակի աշխատանք: Նա ստեղծեց գոլորշի բողնելու ավտոմատ ձև՝ մինչ այդ գոյություն ունեցող մյուս մեքենաները գոլորշին գլանի մեջ բողնելու համար պահում էին հատուկ բանվոր, որն անընդհատ բացում և փակում էր մեքենան ղեկավարելու ծորակները: Այս մեքենաները մի րոպեում ոււ

շարժում հազիվ էին կատարում, իսկ Պոլզունովը շարժումներն արագացնելու համար գլանների միջի գոլորշին սառեցնում և խտացնում էր, ոչ թե գլանները դրսից սառեցնելով, այլ սառը ջրի շիթը մտցնելով դրանց մեջ:

Պոլզունովի «Հրե մեքենայի» գծագրերը և նկարագիրը ուղարկված է եղել արտասահման: Դրանցից օգտվել են արտասահմանյան մեքենագետները:

Միայն երեք տարի անց, 1769 թվականին Ջեմս Ուատտը իր մեքենայի համար կարողացավ պատենտ ստանալ. 1784 թվականին նրա ստացած պատենտում հիշատակվում է ունիվերսալ մեքենայի մասին: Շլատտեր անունով մի գիտնական Պոլզունովի մասին ասել է. «...Նրա այս միտքը (մեքենա կառուցելը) պետք է համարել նոր գյուտ»:

Շվեդացի բնագետ և ֆիզիկոս Կակսմանը Բառնաուլում մոտիկից ծանոթանալով Պոլզունովի հետ, իր նամակում գրում է. «Մյուսը, որի հետ ես սերտորեն կապված եմ, լեռնային մեխանիկոս Իվան Պոլզունովն է, մի մարդ, որը պատիվ է բերում իր հայրենիքին: Նա հիմա աշխատում է «Հրե մեքենա» կառուցելու վրա, որը միանգամայն տարբերվում է անգլիական և հունգարական մեքենաներից: Այս մեքենան աշխատեցնելու է ձուլարանի փուքսերը: Ի՞նչ օգուտ կլինի դրանից: Ռուսաստանը ժամանակին կկարողանա գործարաններ կառուցել բարձրաբերձ լեռներում և անգամ հանքահորերում: Այս մեքենան աշխատեցնելու է 15 հնոց...»



«Հրե մեքենայից» բացի, Պոլզունովը կառուցել է բազմաթիվ այլ գործիքներ:

Ռուս մեծ գյուտարար և մեխանիկ Պոլզունովը ցարիզմի օրոք, չգնահատվեց այնպես, ինչպես հարկն էր: Միայն սովետական ժողովուրդը բարձր գնահատեց նրա մեծ գյուտը:



# ԳԱՐՆԱՆ ԵՐԳ

## ՍԱՐՄԵՆ

*Գարնա՛ն թռչուններ,*
*Բարով եք եկել.*
*Հայրենիքը մեր*
*Կանաչ է հագել:*
*Արագիլն արդեն*
*Կանգնել է բընում,*
*Ծիծեռնակը դեռ*
*Իր բույնն է շինում:*
*Ճերմակ աղավնին*
*Ճախրում է օդում,*
*Կարծես տոն լինի*
*Սարում ու հանդում:*

*Դալար ուռենին*
*Ժպտում է այգում,*
*Ծառի ճյուղերին*
*Ծիտիկն է երգում:*
*Մուրճերն են զնգում*
*Մեր լայն փողոցում,*
*Քաղշինն է երկու*
*Նոր շենք կառուցում:*

*Նայելով արագ*
*Բարձրացող շենքին,*
*Հայրիկս է ուրախ*
*Ասում մայրիկին.*
*— Նայի՛ր այն շենքին,*
*Մենք մայիսմեկին*
*Հենց այդ պալատում*
*Կստանանք նոր տուն:*
*Մենք էլ մեր խաղաղ,*
*Ազատ աշխարհում*
*Գոչում ենք ուրախ.*
*— Ողջո՛ւյն քեզ, գարուն:*

# ԱՄԵՆ ԱՌԱՎՈՏ

Ռ. ԿԱՍՊՅԱՆ

Դեմքով սիրուն ու պայծառ
Նա մի աղջիկ է փոքրիկ,
Կարմիր վզկապ ունի նա
Եվ աչիկներ գեղեցիկ։



Ամեն, ամեն առավոտ
Երբ ես գործի եմ գնում,

Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

Փոքրիկ աղջիկն անծանոթ
Միշտ փողոցում հանդիպում
Եվ ինձ ժպտում է քերև,
Ես էլ նրան՝ ակամա.
Կարծես տալիս ենք բարև
Այդ ժպիտով ես ու նա։
Չենք ճանաչում մենք իրար,
Բայց այնքան ենք հանդիպել,
Ծանոթներից էլ մենք լավ
Մտերիմներ ենք դարձել։
Թե մի օր չեմ հանդիպում
Այդ փոքրիկին ժպտերես,
Ժամացույցին եմ նայում.
— Չե՞մ ուշացել գործից ես։
Իսկ մյուս օրը նորից
Երբ հանդիպում ենք իրար,
Իր հայացքով ինձանից
Ուզում է նա իմանալ՝
Երեկ ինչո՞ւ չկայի,



Գործից քիչ և ուշացա,
Հարցն այդ ես էլ կտայի
Այդ փոքրիկին սևաչյա։
Բայց ժպտում եմ ակամա,
Իսկ նա վազում է դասի.
Ստուգում ենք ես ու նա
Կարծես մեկս մյուսին,
Որ չուշանամ ես գործից,
Իսկ աղջիկն իր դասերից՝
Սկսում ենք մենք ուրախ
Այսպես օրը մեր խաղաղ։
Թեև նա ինձ անծանոթ,
Բայց ինձ այնպես է թվում,
Որ նա ամեն առավոտ
Ինձ լուսաբաց է բերում։

# Ճռատիկը



Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Հ. ԺԱՄԱԳՈՐԾՅԱՆԻ

...Ցոլակն աչքերը բացեց։ Ա՜խ, ի՜նչ լավ երազ էր։ Ի՜նչ լավ կլիներ, որ ինչպես երազում՝ ամբողջ ընտանիքով քննություն տային...

Տարվա ընթացքում ինչքա՜ն դեպքեր են պատահել, երբ դպրոցական ու պիոներական հանձնարարությունները կատարելիս Ցոլակին օգնել են և՛ պապիկը, և՛ տատիկը, և՛ հայրիկը... միայն Նվարդն ու Ստեփանիկըն են, որ բոլորովին չեն օգնել։ Այ, թեկուզ հենց աշխարհագրությունից։ Ինչքա՜ն է պատահել, երբ համր քարտեզները լրացնելիս, ներկելիս, բոլորը մասնակցել են... Կամ թվաբանական խնդիրներ լուծելիս... Ո՞ւր է թե հիմա հնարավոր լիներ այդ ձևով ազատվել վրա հասնող փորձանքից. իսկ փորձանքը հեռու չէր։

Պատի վրայի օրացույցն ասում էր, որ հունիսի տասն է. իսկ հունիսի տասնմեկին Ցոլակը պետք է քննություն տար հենց աշխարհագրությունից։

Երեկ Ցոլակը շատ ուշ է պառկել քնելու։ Ամբողջ երեկո, մինչև ուշ գիշեր, կարդում էր դասը, դիտում քարտեզները։ Երկու օր պարապելով նա հազիվ գրքի կեսն էր կարդացել։ Հիմա, ճիշտ է, արթնացել է, բայց գլուխը ծանր է, կոպերը ցավում են. այնպես հոգնած է զգում, որ կարծես գիշերը ոչ թե քնել է, այլ շալակով քար է կրել։ Ցոլակը նայեց պատի ժամացույցին։ Ժամը ուղիղ տասն էր։

— Օհո՛, այ թե քնել-մնացել եմ, հա՜...

Նա վեր թռավ տեղից. միայն տրուսիկով ու մայկայով վազեց կից սենյակը...

— Տատի՛կ,— ճչաց նա,— ինչո՞ւ ինձ չես արթնացրել։ Ժամը տասն է, իսկ իմ օրվա ռեժիմում գրված է, որ պիտի արթնանամ ժամը յոթին։ Երեք ժամում ինչքա՜ն պարապած կլինեի...

— Իսկ մենք բոլորս հերթով երեք ժամ շարունակ քեզ ձայն ենք տվել,— բարկացած ասաց տատիկը.— պապիկդ, հայրիկդ ու մայրիկդ էլ աշխատանքի գնալուց առաջ քեզ ձայն տվին, Նվարդն ու Հակոբիկն էլ։ Ստեփանիկն էլ քիչ առաջ քաշեց, քաշքշեց քեզ, հետո ձանձրացավ. գնաց նստեց պատշգամբում՝ խաղ է անում...

Ցոլակը շտապ-շտապ լվացվեց, թեյեց ու գնաց իր անկյունը՝ պարապելու։ Գնաց, իսկ քիչ հետո լսվեց նրա ձայնը։

— Տատի՛կ, իսկ ո՞ւր է աշխարհագրության դասագիրքը։

— Ես ի՞նչ գիտեմ, երեկ պարապում էիր։

Փնտրում է Ցոլակը. խառնել է բոլոր գրքերը, նայում է մահճակալների, սեղանների տակ, նույնիսկ բարձերի տակ. նույնիսկ աթոռը դնում է ու բարձրանում նայում պահարանի վրա. բայց դասագիրքը չկա ու չկա։ Տատիկն էլ է որոնումներին միանում, ապա հանկարծ հարցնում է.

— Չլինի՞ Ստեփանիկն է վերցրել...

— Ստեփանի՛կ, Ստեփանի՛կ,— ձայն են տալիս նրանք միասին։

Պատշգամբից օրորվելով ներս է գալիս Ստեփանիկը։ Նա կրծքին ամուր սեղմել է մի գիրք։

— Ահա թե որտեղ է գիրքը,— բարկացած բղավում է Ցոլակը,— ինչքա՜ն ժամանակ կորցրի... տուր այստեղ, շո՛ւտ...

— Ես սովորում եմ...— վախեցած թոթովում է Ստեփանիկը,— հատակից վերցրի...

Ցոլակն այստեղ նորից հիշեց իր երազը։ Ա՜խ, ի՜նչ լավ երազ էր...

Ահա վերջապես նստեց պարապելու։ «Չեմ հասցնի, չեմ հասցնի» անընդհատ մտածում է նա։ Ով գիտե արդեն քանի տասնյակ անգամ թերթում է դասագրքի էջերը։ Ինչքա՜ն շատ է մնացել. իսկ ժամանակն ինչքան արագ է անցնում... Արդեն 12-ից 10 րոպե է պակաս։ «Չեմ հասցնի, չեմ հասցնի»— շարունակ մտածում է Ցոլակը։

Ահա սկսում է կարդալ։ Կարդում է երկու էջ. նայում է ժամացույցին. երկու էջը 10 րոպեում է կարդացել։ Բայց այստեղ Ցոլակը հանկարծ սարսափով զգաց, որ կարդացածից բան չի հասկացել։ Նա նորից է սկսում կարդալ «Ասիայի հետազոտությունների պատմությունից» գլուխը... Չէ, բան դուրս չի գալիս։

«Մի վազեմ-տեսնեմ մյուսներն ի՞նչ են անում,— մտածեց նա,— համ էլ կթարմանամ»... Նայում է դիմացը փակցված օրվա ռեժիմին. «Ժամը 12-ին՝ երկարատև ընդմիջում մինչև 12-ն անց կես»։

«Միևնույն է, հանգստի ժամ է»—մտածում է նա։

Քիչ հետո Ցոլակը Ռուբիկենց բակումն է։ Ա՛յ քեզ տարօրինակ մարդիկ. վաղը քննություն է, իսկ սրանք վոլեյբոլ են խաղում։ Խաղում է նաև իրենց դասարանցի Աշոտը, որը մոտիկ է ապրում։ Նա և Ռուբիկը մտերիմ ընկերներ են և միասին են պարապում։

— Օ՜, Շտապի՜կը, Շտապի՜կը,— նրան տեսնելով բացագանչեցին տղաները։

— Ի՞նչ գործի եք,— բարձրաձայն հարցրեց Ցոլակը։— Ձեզ համար քննություն չկա՞, ինչ է...

— Մենք ընդմիջում ենք անում,— հայտարարեց Աշոտը,— արի դու էլ խաղա։

— Ես էլ ընդմիջում էի անում. վազեցի, որ տեսնեմ դուք ինչ եք անում,— ասաց Ցոլակը և միացավ նրանց։

Քիչ հետո տղաները խաղը վերջացրին։

— Շտապի՛կ, ուզո՞ւմ ես՝ արի մեզ հետ մի քիչ կրկնիր,— առաջարկեց Ռուբիկը։

Ցոլակն անմիջապես համաձայնեց։ Ահա նրանք նստեցին Ռուբիկենց սենյակում, որտեղ պատերին ամենուրեք քարտեզներ են փակցված։ Աշոտը ոտքի կանգնեց և խիստ ուսուցչի նման դեմքը լրջացնելով ասաց.

— Ռուբի՛կ, դու պատմիր Չեխոսլովակիայի բնական հարստությունների մասին, իսկ դու, Ցոլա՛կ, պատրաստվիր նկարագրել Ամերիկայի կենդանական աշխարհը։

Ռուբիկն անմիջապես սկսեց համարձակ ու վստահ խոսել, իսկ Ցոլակը սրտնեղած մտածեց. «Ա՛յ թե հարց տվավ տալու. ես իսկի չեմ էլ հասել այդտեղ»... Նա էլ չսպասեց, մինչև որ Ռուբիկը վերջացնի...



— Ես գնամ,— ասաց և ոտքի կանգնեց։

— Ո՞ւր,— հարցրին տղաները։

— Ես գնում եմ, ես շտապում եմ, իմ ընդմիջման ժամանակն անցնում է, իսկ դուք դանդաղ եք կրկնում...

— Չէ, դու դեռ սպասիր, ես քեզ հարց եմ տվել,— փորձեց նրան պահել Աշոտը, բայց Ռուբիկն ասաց.

— Դու նրան թող, Աշո՛տ, չգիտե՞ս՝ Շտապիկն է, էլի շտապում է...

Այդ ժամանակ Ցոլակն արդեն վազում էր փողոցով։

***

Ահա Ցոլակի պարապելու անկյունը. գրասեղանը, վրան՝ թափված գրքեր, տետրեր. գրասեղանի մոտ, պատին փակցված՝ աշխարհի քարտեզը, իսկ քարտեզի տակ, տետրակի թերթիկի վրա, գեղեցիկ ու խնամքով գրված «օրվա ռեժիմը»։ Նրա դիմաց պատի ժամացույցը ցույց է տալիս ուղիղ ժամը չորսը։ «Օրվա ռեժիմը» ասում է. «Պարապել 4-ից 5-ը, ժամը 5-ին՝ 10 րոպե ընդմիջում»։

— Իսկ ո՞ւր է Ցոլակը,— հարցնում է օրվա ռեժիմը, հարցնում են գրքերն ու տետրերը, քարտեզները։

— Չը-կա, չը-կա,— ասում է ժամացույցը։

Ահա քրտնած ու հևիհև ներս խուժեց Ցոլակը։ Նա հասցրել էր իր դասընկերներից մի քանիսին այցելել, մի քանի ընդմիջումների մասնակցել, խաղալ և՛ գնդակ, և՛ շախմատ ու շաշկի, և՛ վիճաբանել ֆուտբոլային նոր սեզոնի շուրջը...

— Ո՞րտեղ էիր,— հարցրեց մայրիկը։

— Ժամանակ չունեմ, հետո...— հևասպառ ասաց Ցոլակը.— ես շտապում եմ, մի բան տուր ուտեմ, շարունակեմ պարապել...

Ժամանակը քիչ է։ Ցոլակն ուտելիս էլ է շտապում։ Պատառը կոկորդին դեմ առավ։ Նա երկար ժամանակ հազում է, դեմքը կարմրել է, քրտնել...

— Կամա՜ց,— ասում է պապիկը,— եփից հո ձիավոր չի ընկել...

— Շտապում եմ,— խեղդվելով հառաչում է Ցոլակը։

— Շտապում ես, միշտ շտապում ես ու միշտ էլ ոչ մի բանի չես հասնում,— բարկացած ասում է մայրիկը...

Վերջապես ճաշը վերջացրեց։ Նստեց պարապելու։

«Դեռ վեց ժամ կարող եմ պարապել,— մտածում է Ցոլակը։ «Չէ, վեց ժամը քիչ է, յոթ ժամ, չէ՝ տաս ժամ... Կպարապեմ անընդհատ, ամբողջ գիշեր մինչև քննության սկսվելը, առանց ընդմիջումի»։ Վերջին միտքը նրան ոգևորում է։ Օ՛հ, ինչքա՜ն ժամանակ կա... Դեռ ժամը 5-ն անց կես է, իսկ քննությունը կսկսվի վաղը, առավոտյան ժամը 9-ին...

***

Ուշ գիշեր է։ Ցոլակը հոգնել է. քունը տանում է։ Գլուխը, աչքերը ցավում են, բայց նա դեռ չի կարող պառկել։ Քիչ, շատ քիչ ժամանակ է մնացել մինչև քննությունը. իսկ կրկնելու, սովորելու դեռ շատ բան կա։ Ինչ էլ որ կրկնել է, նրա գլխում խառնվել, շիլափլավ է դարձել։

Նախորդ քննությունը բնագիտություն էր։ Այդ քննության համար էլ Ցոլակը ոչինչ չէր արել ո՛չ երրորդ քառորդի ընթացքում, ո՛չ գարնանային արձակուրդի ընթացքում։ Հետո վերջին մի քանի օրում գիշեր-ցերեկ պարապելով մի կերպ «3» ստանալով դուրս պրծավ։

Դրանից հետո ահա աշխարհագրության

քննությունը։ Ինչքան էլ որ շտապում է, շտապում, ոչինչ չի ստացվում, Աշոտը, Ռուբիկը, Հրանտիկը, մյուսները ինչ հանգիստ են պարապում։ Դե նրանք վաղուց կրկնել պրծել են ու հիմա նորից ու նորից ստուգում են իրենց։ Իսկ Ցոլա՞կը...

Ու նրա գլխում մի ընդհանուր շիլափլավի մեջ խառնվել են բնագիտությունն ու աշխարհագրությունը։ Ցոլակը սարսափով զգում է, որ ոչինչ, ոչինչ չի հիշում կրկնածից։ Որտե՞ղ է Բուենոս-Այրես քաղաքը, Կոնգոն քաղա՞ք է, թե գետ, հիդրան գե՞տ է, թե՞ Հարավային Ամերիկայում բնակվող կենդանի...

Այդ բոլոր անունները պարում են ու թռչկոտում Ցոլակի ուղեղում։

— Շտա-պի՛կ, Շտա-պի՛կ...

Այս ո՞վ է ծաղրում... Ախ, այդ ժամացույցն է աշխատո՜ւմ։ Ժամանակը սլանում է, սլանում, իսկ Ցոլակն այնքան հոգնած է...

Ցոլակը թերթում է գիրքը, թերթում է արագ-արագ... Նրա աչքերն աշխարհագրության դասագրքում որոնում են հիդրա բառը։ Ի՞նչ բան է հիդրան, գե՞տ է, քաղա՞ք, թերակղզի, թե՞ Հարավային Ամերիկայում ապրող կենդանի...

Մտքերը կենտրոնացնելու համար Ցոլակը գլուխը դնում է սեղանին... «Հիդրա... հիդրա...»

— Շտա-պիկ, Շտա-պի՛կ...

Այդ ո՞վ է ծաղրում. ժամացույցն է։ Նրա սլաքը վազում է ու վազում թվացույցով։

— Շտա-պիկ, Շտա-պի՛կ...

Այդ ո՞վ է ծաղրում։ Դա պատուհանի գոգին թառած ճնճղուկն է ճկճկում։ Արդեն լույսը բացվել է։

— Ցոլա՛կ, Ցոլա՛կ,— ձայն է տալիս տատիկն ու ցնցում տղայի ուսը, որը գլուխը սեղանին դրած քնել է։

Ցոլակը վեր է թռչում. առավոտյան ժամը յոթն անց կես է։ Ցոլակը շտապ-շտապ լվացվում է։ Արդեն րոպեներ են մնացել։ Նա արագ-արագ թերթում է դասագիրքը, նայում քարտեզը։ «Վազեմ դպրոց. տղաներին մի քիչ հարց ու փորձ կանեմ» մտածում է Ցոլակը։

Նա գիրքը թևի տակ է դնում ու դուրս թռչում։

— Սպասիր, ո՞ւր, թեյիր՝ հետո,— նրա ետևից կանչում է տատիկը։

— Շտապում եմ...

* * *

Արդեն բոլոր աշակերտները հավաքվել են։ Դպրոցի բակը լցված է նրանց ծիծաղով, խոսակցության ձայներով։ Տեղ-տեղ խմբերով կանգնած միմյանց ստուգողական հարցեր են տալիս։ Իսկ Ցոլակը տխուր, գլխահակ, շփոթված, խմբից-խումբ է անցնում։

— Շտապի՛կ, քեֆդ վա՞տ է, ի՞նչ է,— հարցնում է Աշոտը։

— Աշո՛տ,— ընկերոջ թևը բռնելով հարցնում է Ցո՞լակը,— դու ինձ հիշեցրու հիդրայի մասին...



— Հիդրայի՞,— զարմացած հարցնում է Աշոտը,— ինչի՞դ է պետք հիդրան, չէ՞ որ դա բնագիտությունից է։ Հիդրան պատկանում է աղեխորշավորների դասին, ապրում է լճակներում, դանդաղ հոսող գետերում...

Բայց Ցոլակն արդեն նրան չի լսում։ Նա վազում է։

— Ո՞ւր, Ցոլա՛կ, ես դեռ չեմ վերջացրել,— ասում է Աշոտը,— բայց հետո ձեռքը թափ է տալիս,— Շտապիկն է էլի, նորից շտապեց...

— Զը՜նգ, զը՜նգ, զը՜նգ...

Արդեն հնչում է զանգը։ Սկսվում է քննությունը։

## Կարգապահության մասին, պատմիկներ խմբագրությանը

## ՄԵՐ ՕՂԱԿՈՒՄ

Երրորդ քառորդի վերջում արդեն մեր օղակում «երկու» ունեցող չկար: Մենք դրան հասանք օղակի բոլոր պիոներների միահամուռ աշխատանքով: Հատկապես մեծ դեր խաղաց կարգապահության ամրապնդումը:

Առաջին և երկրորդ քառորդներում մեր օղակից Ամալյա Սաատրյանը և Էլիտա Ասոյանը հաճախակի ուշանում էին դասից, բացակայում: Այդ էր պատճառը, որ նրանք հաճախ «երկու» գնահատական էին ստանում: Մենք հասկացանք, որ նախ պետք է բարձրացնել կարգապահությունը, որից հետո «երկուսները» վերացնելը դժվար չի լինի: Այդպես էլ արեցինք: Ամբողջ օղակի ջանքերով Ամալյան և Էլիտան դադարեցին բացակայելուց, իսկ հետո մեր օգնության շնորհիվ վերացրին նաև «երկուսները»: Չորրորդ քառորդի ընթացքում մենք միաժամանակ սկսեցինք կրկնել անցածը: Այժմ մեր օղակի յուրաքանչյուր անդամ համարձակ կվերցնի հարցատոմսը:

*ԱԻԴԱ ՆԱԶԱՐՅԱՆ*

*(Շիրվանզադեի անվան դպրոցի պիոներական դրուժինայի № 14 ջոկատի 3-րդ օղակի օղակավար)*

## ՀԱՄԱՐՁԱԿՈՒԹՅՈ՞ՒՆ, ԹԵ...

*Տրամվայի սրընթաց անցնող վագոններն այնքան սովորական էին, որ անցորդները չէին էլ նկատում, թե երբ են նրանք գալիս ու գնում: Բայց այս անգամ շատերն էին նայում անցնող տրամվայի կողմը:*

*Վագոնի ոտնատեղից կախվել էր մի տղա և մի ոտքի վրա այնպիսի եռանդով էր ճոճվում, ասես պարելիս լիներ: Տղան, ըստ երևույթին նկատել էր, որ մայթից իրեն են նայում և ցանկացավ ցույց տալ իր ամբողջ «շնորհքը»: Եվ ահա արագ ընթացքի ժամանակ օդում ճարպկորեն մի պտույտ գործելով թռավ...*

*Այդ րոպեին մայթից մի կնոջ ճիչ լսվեց: Անցորդները շունչները պահած կանգ առան: Տղայի ոտքը ծալվել էր և նա ամբողջ հասակով մեկ փռվել էր ասֆալտի վրա: Այդ դեռ բավական չէր, արագ թափով դեպի նա էր գալիս մի բեռնատար մեքենա: Լավ էր որ շոֆերը ժամանակին կանգնեցրեց մեքենան: Դեպքի վայրը շտապեցին մարդիկ և տղային ոտքի կանգնեցրին:*

*— Լավ է պրծել,— լսվեցին այս ու այն կողմից:*

*Եվ քիչ առաջ տրամվայի ոտնատեղից կախված տղան, որ իրեն հերոս էր պատկերացնում՝ կաղալով և բոլորի ներկայությամբ հեծկլտալով՝ տուն գնաց:*

*Դա Երևանի 76-րդ դպրոցի 6-րդ «ա» դասարանի աշակերտ Վաչիկ Դարյանն էր:*

*Գ. ՈՒՄՐ-ՇԱՏ*

### Վատ հիշատակ

Լևոնն ասաց. — Աստղ'ւր,
Մի սրիչդ այստեղ տուր:
— Ինչ է, մատի՞տ ես սրում:
— Չէ՛, երկու տառ եմ գրում.
Հիշատակ է, թող մնա,
Որ կարդացողն իմանա...

Հաջորդ օրը դպրոցում,
Ծնողական ժողովում
Մի մայր ելավ զայրացած,
Խոսք վերցրեց ու ասաց.

— Եկեք պարզենք նախ մի բան,
Ո՞ւմն է արդյոք այս տղան,
Անկարգապահ այս «Լև»-ը,
Խելքից այսքան թեթևը,
Որ սեղանը փորփրել
Վրան տառեր է գրել...

*Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ*

Նկարները Մ. Սոսոյանի



Շտապելու կարիք չկա,
Ո՞ւր է՝ մինչև մայիսը գա՞...


Զբաղված եմ, էլ ի՞նչ նոր դաս.
Գործի ժամին՝ այդ էր պակաս...



—Ո՞ւր ես գնում, արի նստիր,
Նախ դասերդ լավ պատրաստիր...

# ՄՈԽՐԱԳՈՒՅՆ ԿԱՊԻԿԸ

Ֆելյետոն

Ալբերտը շատ էր պարծենում իր դասագրքերով, թեև պետք է ամաչեր և ոչ թե պարծենար: Ախար դրանք գրքեթե վերածվել էին խայտաբղետ ալբոմների:

Նրա աշխարհագրության գրքի յուրաքանչյուր էջում մի գունատիպ նկար կար փակցրած, նրանցից, որ վաճառվում է հատուկ ալբոմների համար: Նա այդ նկարները գնում էր տրամվայի համար մոր տված փողերով:

Դուք, երևի, կարծում եք, թե նա ստիպված ոտքո՞վ էր դպրոց գնում: Ո՛չ: Ալբերտը գտել էր ձրի երթևեկելու ձևը. կախվում էր տրամվայի պոչից:

Դասագրքերում փակցված յուրաքանչյուր նկարն ուներ իր պատմությունը: Բայց այդ նկարներից մեկն այնքան մեծ պատմություն ունեցավ, որ հիմա Ալբերտն անհամբեր սպասում է տարեվերջին, որպեսզի ազատվի իր երփներանգ դասագրքերից:

Աշխարհագրության դաս էր: Ընկեր Սուրենյանը նոր նյութ էր պատմում: Աշակերտները ուշադրությամբ լսում էին նրան, իսկ Ալբերտը թվաբանության դասագրքի 45-րդ էջում տրպում էր մի կապտականաչ թութակ: Թարսի պես պոկվեց թութակի կտուցը: «Առանց կտուցի էլ թութա՞կ լինի»,— մտածում էր Ալբերտը և աշխատում մի կերպ կտուցը կպցնել: Այդ պահին նրա կողքը բոթեց Արմենը:

— Դոնե նշանակիր դասի տեղը:

Նա դեռ խոսքը չէր վերջացրել, երբ զանգը տվեց: Ալբերտն շտապ բացեց աշխարհագրության դասագրքի այն էջը, որ ցույց էր տալիս դասատուն: Այդտեղ փակցված էր մի մոխրագույն կապիկ, չարաճճի, պսպղուն աչքերով մոխրագույն կապիկ:

«Մոխրագույն կապիկը» մտքում ասաց Ալբերտը և գիրքը շտապ դնելով պայուսակը, դուրս թռավ դասարանից: Միջանցքում նա մի երկու անգամ էլ կրկնեց. «Մոխրագույն կապիկը», որպեսզի չմոռանա և խառնվեց բակում խաղացող երեխաներին...

Տանն Ալբերտը բաց արեց այն էջը, ուր փակցված էր մոխրագույն կապիկը և մի երկու անգամ կարդաց: Թվում էր, թե սովորեց. բայց երկուշաբթի օրը ուսուցիչն առաջինը նրան դաս հարցրեց: Ալբերտը մի պահ շփոթվեց: Այստեղից էլ սկսվեցին նրա ձախորդությունները: Նախ դասի վերնագրի փոխարեն նա ասաց «Մոխրագույն կապիկը»: Դրա վրա տղաները մի լավ ծիծաղեցին, իսկ երբ նա սկսեց պատմել դասը՝ բոլորը զարմացան: Քիչ չզարմացավ նաև ընկեր Սուրենյանը: Ալբերտը կցկտուր պատմում էր մի դաս, որ պետք է մի ամիս հետո անցնեին:

Դասամիջոցին տղաները շրջապատեցին նրան. ի՞նչ էր պատահել Ալբերտին: Իսկ նա շփոթված բաց արեց աշխարհագրության դասագիրքը և սկսեց փնտրել մոխրագույն կապիկը: Պարզվեց, որ դասագրքում վեց մոխրագույն կապիկ կա: Վեցն էլ իրար նման, վզները մի փոքր ծռած դեպի աջ, չարաճճի ու պսպղուն աչքերով, սպիտակավուն ծաղրական դնչով: Ալբերտը վրդովված ծածկեց դասագիրքը:

Հաջորդ օրը դասերից հետո նրա հետ լուրջ խոսակցություն ունեցան նախ ջոկատավարը, ապա 6-րդ դասարանի ղեկավար ընկեր Ավետյանը: Թե ինչ ասացին նրանք Ալբերտին չգիտեմ, միայն վերջերս նա ինձ առանձին ասաց.

— Եկող տարի իմ դասագրքերում ոչ մի նկար չի լինի, ոչ մի նկար, ազնի՛վ խոսք:

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

### Հիշիր

Դու ասում ես, թե դպրոցը կայարան չի,
Ու դպրոցից ուշանալը շատ մեծ բան չի...
Բայց իմացիր, ով ուշանում է իր դասից,
Դասը նրան չի սպասի:
Դասարանը անիվ չունի, բայց մեկ ժամում
Շատ նեռուներն է նա գնում:

Ս. ՄԱՐՇԱԿ




Օրվա ռեժիմն իր հաստատուն,
Պահպանում է միայն կատուն:



Քննության է եկել հիմա,
Բայց չի կրկնել ի՞նչ հիշի նա:



Այժմ էլ տխուր, միտք է անում,
Թե՝ ոնց մնաց դասարանում:

# ՀԱՐՅՈՒՐ ՔՍԱՆՀԻՆԳ ՏԱՐԻ

Վ. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ
(Պատմական գիտությունների թեկնածու)

Ֆոտո Պ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Հարյուր քսանհինգ տարի առաջ Հայաստանը միացավ ռուսական կայսրությանը: Հայ ժողովուրդը տասնյակ տարիներ շարունակ փորձում էր իր բախտը կապել ռուս մեծ ժողովրդի բախտի հետ: Եվ նրա բուռն ձգտումը իրականացավ:

Հայ ժողովուրդը երկար ժամանակ տառապում էր պարսկական շահերի և խաների բռնապետության տակ: Նա կանգնած էր ֆիզիկական բնաջնջման եզրին: Նրան դաժանորեն շահագործում էին նաև ներքին թշնամիները՝ հայ մելիքներն ու հայ հոգևորականները: Աշխատավորների կյանքը և ունեցվածքը ենթակա էին նախշտակման ու ոչնչացման:

Այդ ժամանակ գյուղացիներից ու արհեստավորներից վերցնում էին մոտ 30 տեսակ հարկ: Աշխատավոր գյուղացիները փաստորեն ապրում էին ստրուկների նման: Սովորական երևույթ էր դարձել գյուղացիների գնումն ու վաճառքը: Ամեն տարի շահի և խաների հարեմների համար բռնի հավաքում էին մեծ թվով երեխաներ:

Սակայն հայ ժողովուրդը քիչ ջանքեր չէր գործադրել, քիչ զոհեր չէր տվել կործանումից փրկվելու համար: Բայց նրա ուժերից վեր էր թոթափելու բռնակալների ծանր լուծը:

Հայաստանի ազատագրությանը, ինչպես նաև իր ժամանակին Վրաստանի և Ադրբեջանի ազատագրությանը կատաղի դիմադրություն էին ցույց տալիս Ֆրանսիայի և Անգլիայի բուրժուական կառավարությունները: Դեմ էր նաև հայ շահագործող դասակարգի զգալի մասը, որը կապված էր պարսկական վերնախավի հետ: Անգլիացիները և ֆրանսիացիները օգնում էին պարսկական շահին, ամրացնում հին բերդերը, կառուցում նորերը: Եվ պարսկական կառավարությունը նրանց օգնությամբ նախապատրաստվում էր հարձակվել Ռուսաստանի վրա և նրանից խլել Անդրկովկասը:



Ռուսական բանակի մուտքը Երևան

1826 թվականի աշնանը, անգլիական կառավարության դրդմամբ, պարսկական Շահ-Աբբասի քառասուն հազարանոց բանակը, շահի որդի Աբբաս-Միրզայի հրամանատարությամբ հանկարծ ներխուժեց Ղարաբաղ: Սկսվեց Ռուս-Պարսկական պատերազմը:

1826 թվականի սեպտեմբերի 3-ին Շամխոր գետի ափին և սեպտեմբերի 13-ին Գանձակի մոտ, ռուսական բանակը ճակատամարտ տվեց և պարտության մատնեց թշնամուն: Շահի զորքերը փախուստի դիմեցին:

Ռուսական զորքին օգնում էր Գրիգոր Մանուչարյանի պարտիզանական հեծյալ ջոկատը: Շամշադինի և Դիլիջանի շրջաններում նա թշնամուն հարվածում էր թիկունքից: Կռվում էին նաև 1812 թվականի Հայրենական պատերազմի հռչակավոր պարտիզան Դենիս Դավիդովի նոր կազմակերպված ջոկատները: Նրանց մեջ կային մեծ թվով հայեր, վրացիներ և ադրբեջանցիներ: Դենիս Դավիդովի խմբերը հարձակվում էին Հասան խանի զորքերի վրա և նրանց քշում Երևանի խանության սահմանները: Պարսկական զորքերի դեմ քաջաբար կռվում էր նաև Շիրակի հայ գյուղացիությունը: Երկու կողմերն էլ նախապատրաստվում էին պատերազմական գործողությունները վերսկսել 1827 թվականին:

Սկսվում է ռուսական բանակի Երևանյան հռչակավոր արշավանքը: Այդ բանակն առանց լուրջ դիմադրության հանդիպելու, մտնում է Երևանի խանության սահմանները: Նրա հայտնվելը մեծ խանդավառություն է առաջ բերում հայ և ադրբեջանական ժողովուրդների մեջ: Մեծ թվով հայեր և ադրբեջանցիներ որպես կամավորներ մտնում էին ռուսական բանակ: Թիֆլիսում կազմակերպվում է հայ աշխարհազորականների գունդը: Շուտով նրա ռազմիկների թիվը եռապատկվեց:

Հարձակվող ռուսական բանակը բաժանվում է երկու մասի: Գեներալ Կրասովսկու զորաջոկատը պաշարելու էր Երևանի բերդը, իսկ Պասկևիչի ջոկատն արշավում է Նախիջևանի խանության վրա և 1827 թվականի հունիսի 26-ին գրավում Նախիջևան քաղաքը: Ռուսական բանակն անցնում է Արաքսի աջ ափը: Հուլիսի հինգին սկսվում է Ջիվանբուլաղի ճակատամարտը: Այստեղ ռուսները մեծ ջարդ են տալիս շահի զորքերին: Ռուսական զորքը գրավում է նաև Աբբասաբադ բերդը, որը հզոր ամրություն էր Երևանից Թավրիզ տանող ճանապարհին:

Ամռան ուժեղ շոգերի պատճառով գրեթե բոլոր ռազմաճակատներում մարտական գործողությունները դադարում են:

Այդ ժամանակ Աբբաս-Միրզան երեսուն հազարանոց բանակով անցնում է Արաքսը և Սարդարաբադի (այժմ Հոկտեմբերյան) վրայով ներխուժում է Էջմիածին: Ռուսական փոքրաթիվ զորաջոկատին շտապ օգնության է հասնում գեներալ Կրասովսկու զորաջոկատը: Օշական գյուղի մոտ կատաղի մարտ է տեղի ունենում: Պարսիկների մի քանի անգամ գերազանցող ուժերի դեմ քաջաբար կռվում էին ռուս և հայ զինվորները: Շահի զինվորականները դաժանաբար էին վարվում գերի ընկած ռուսների և հայերի նկատմամբ. կտրում էին իրենց զոհերի գլուխները, խոշտանգում նրանց մարմինները: Տեսնելով ռուսական զորքի ծանր վիճակը և շահի զինվորականների գազանությունները, պարսկական բանակի փորձված հրետանավոր երևանցի Հակոբ Հարությունյանը մարտի եռուն պահին, արհամարհելով մահը, հրանոթի փողը դարձնում է շահի զորքերի կողմը և ռումբերի տարափ թափում նրանց վրա: Պարսիկները բռնում են նրան, կտրում նրա լեզուն, քիթը, ականջները, ոտքի բաթերը, հանում աչքերը և նետում դիակների մեջ: Բայց զազանաբար խոշտանգված հերոսը կենդանի է մնում: Ռուսական կառավարությունը հայ հերոսին միանվագ պարգև է տալիս և տարեկան 100 ռուբլի թոշակ նշանակում:

Օշականի մոտ, գեներալ Կրասովսկու ջոկատին ծանր կորստից փրկում են գեներալ Պասկևիչի զորքերը:

Ռուսական բանակը շարունակում է պատերազմական գործողությունները: 1827 թվականի սեպտեմբերի 19-ին ռուսները գրավում են Սարդարաբադի բերդը: Սեպտեմբերի 25-ին ռուսական զորքը պաշարում է Ասիայի այն ժամանակվա ամենախոշոր ամրություններից մեկը՝ Երևանի բերդը: Ծանր հրետանին գիշեր-ցերեկ ռմբակոծում է բերդը: Երևանի խանի բերդապահ զորքերը շարունակում են կատաղի դիմադրություն ցույց տալ: Բերդի գրավումը ձգձգվում էր:

Ռուսական զորքին օգնելու համար հարևան գյուղերից մեծ թվով հայ գյուղացիներ են գալիս: Սկսվում է գրոհը բերդի վրա: 1827 թվականի հոկտեմբերի 1-ի առավոտյան մարտերը փոխադրվում են բերդի ներսը: Ռուս և հայ քաջարի զինվորները խորտակում են թշնամու կատաղի դիմադրությունը: Երեք հազարանոց բերդապահ զորքը զենքը վայր է դնում: Ռուսները գրավում են 4 դրոշակ, 100 մեծ ու փոքր թնդանոթ և այլ ռազմավար: Բերդի գրավմանը մասնակցած ռուս և հայ զինվորները պարգևատրվում են «Երևանի բերդի գրավումը» մեդալներով:

Երևանի բերդի գրավումը մեծ ցնծություն առաջ բերեց հայ ժողովրդի մեջ: «Դժոխքի քանդվելը մեղավորների համար էն գինը չէր ունենալ, ինչպես



*Ռուսական զորքը Լոռու լեռներում:*

Երևանի բերդի առնելը հայերի համար...» ասել է Խ. Աբովյանը:

Շահի ջախջախված զորքի մնացորդներն այլևս անզոր էին դիմադրել: Պարսկական կառավարությունը ստիպված էր ռուսներից հաշտություն խնդրել: Թավրիզից Թեհրան տանող ճանապարհի վրա գտնվող Թյուրքմենչայ գյուղում, 1828 թվականի փետրվարի 10-ին կնքվեց ռուս-պարսկական հաշտության պայմանագիրը, Ա. Ս. Գրիբոյեդովի անմիջական մասնակցությամբ: Այդ պայմանագրով Արևելյան Հայաստանը և Նախիջևանի խանությունը միացան ռուսական կայսրությանը: Պարսկաստանում ապրող հայերը իրավունք ստացան բնակություն հաստատել ազատագրված Արևելյան Հայաստանում:

Ռուսական կառավարության օգնությամբ ավելի քան 40 հազար հայ աշխատավոր գյուղացիներ ու արհեստավորներ տեղափոխվում են հայրենիք՝ Արևելյան Հայաստան: Ռուս մեծ ժողովրդի և Անդրկովկասի եղբայրական ժողովուրդների օգնությամբ, հայ ժողովրդին հաջողվում է վերացնել պատերազմի ավերածությունները: Աստիճանաբար սկսում է շենանալ անապատ դարձած երկիրը, աշխուժանում է քաղաքային կյանքը, զարգանում կուլտուրան: Սակայն Հայաստանը և Անդրկովկասը մնում էին որպես ցարական գաղութներ:

Գնալով ավելի և ավելի էր ուժեղանում հայ աշխատավորների շահագործումը: Քսաներորդ դարի սկզբին ռուս ժողովուրդը ոտքի կանգնեց տապալելու ատելի ցարական տիրապետությունը: Այդ պայքարում Լենինի—Ստալինի պարտիան ներգրավեց Ռուսաստանի բոլոր ժողովուրդներին:

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան իսկական ազատություն բերեց նաև հայ աշխատավորությանը:

Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ միասին այժմ հայ ժողովուրդը ընթանում է կոմունիզմի ուղիով:



# ՓՇՐՎԱԾ ԷԼԵԿՏՐԱԼԱՄՊԸ

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

1.

Այդ օրը Թաղային լիազորը և էլեկտրացանցի տեսուչը եկան հավաքեցին Թաղի բոլոր պիոներներին.

— Ընկերնե՛ր,— ասացին նրանք,— ինչպես ձեզ հայտնի է, այս արդեն երկրորդ անգամն է, որ նրբանցքի այս հատվածում փշրում են էլեկտրալամպերը և փողոցը մնում է մթության մեջ։ Խոսք տվեք, որ թույլ չեք տա՝ այս մեկն էլ ջարդեն։ Խոստանո՞ւմ եք...

— Խոստանում ենք,— պատասխանեցին պիոներները։ Բայց իսկույն էլ մտածեցին. երբ գործն այսքան լուրջ բնույթ է ընդունել, դժվար թե այդ բանը նորից կրկնվի։ Եվ երբ երեկոյան նոր էլեկտրալամպ ամրացրին, նրանք արդեն մոռացել էին իրենց խոստումը։



Մյուս առավոտ վաղ արթնացած երեխաներից մեկը ձայն տվեց և էլեկտրասյան տակ հավաքեց բոլոր տղաներին։ Էլեկտրալամպը նորից ջարդված էր։ Բոլորը լռել և անհարմար էին զգում վեր նայել։ Չէ՞ որ խոսք էին տվել։ Նորիկը, որ կանգնել էր Ազատի կողքին, նրա ականջին փսփսաց.

— Ափսո՜ս, եթե քունս չտաներ, մեր պատուհանից ամբողջ երեկո կհսկեի ու անպայման կիմանայի, թե ո՞վ է ջարդում լամպը։

— Ա՛յ, թե այս երեկո էլ կարողանա, դա արդեն իսկական հերոսություն կլինի, չէ՞,— հարցրեց Ազատը։

— Ոչ, Ազա՛տ, իսկապես հերոսը նա է, ով կկարողանա հայտնաբերել այդ հիմարին,— պատասխանեց Վահեն։

Հաջորդ օրը նոր էլեկտրալամպ կախեցին։ Բոլորը չափազանց անհարմար վիճակում էին։ Նրանք կարծում էին, թե ահա որտեղ որ է կերևան Թաղային լիազորը և էլեկտրացանցի տեսուչը։ Բայց նրանց զարմանքը մեծ եղավ, երբ նրանցից և ոչ մեկն էլ չհայտնվեց։ Հանկարծ երեխաների տրամադրությունը բոլորովին ընկավ.

— Ուրեմն անտեսել են մեզ,— ասաց Վահեն,— պետք է հակառակը ցույց տալ։ Դրա համար՝ ով որ արթուն է մնում, թող պատշգամբից կամ պատուհանից հսկի։

— Ճիշտ է,— համաձայնեցին ընկերները։

2.

Լուռ երեկո էր։

Խավար բակում, ինչ-որ մի տեղ, լսվեց անորոշ մի աղմուկ։ Բակի խոշոր թթենին, որը ձգվում էր մինչև փողոցի էլեկտրալամպը հանկարծ ցնցվեց. կարծես կենդանացավ ու զգուշությամբ սկսեց շարժել ճյուղերը, իր հսկա ստվերը սպառնագին ճոճելով բակի և շրջակա տների վրա։ Նրա ճյուղերի

մեջ անսպասելի կերպով հայտնվեց մի անորոշ զանգված, որը սկսեց շարժվել և մոտենալ էլեկտրասյանը։ Հանկարծ սպիտակ լուսամփոփը փշրվեց. ապա անմիջապես խուլ պայթյունով ցրիվ եկավ նաև էլեկտրալամպը։ Մթնեց։

— Բռնեցե՛ք,— լսվեցին ձայներ տարբեր կողմերից։

Երեխաներից շատերը միմյանցից ծածուկ թաքնվելով բակի տարբեր անկյուններում, որոշել էին հսկել այդ երեկո։

Անծանոթը թթենու վրայից այնքան արագ էր ցած իջնում, որ տղաները հազիվ էին հետևում նրան։ Նա ավելի շուտ իջավ ծառից, քան տղաները կհասնեին թթենուն։ Երեխաները սլացան նրա ետևից։ Նա դուրս եկավ փողոց։

Դժվար էր որոշել՝ ով է նա։ Շատ արագ էր վազում։ Ահա նա կհասնի կողքի նրբանցքը և կթաքնվի մի որևէ մուտքի մեջ։ Բայց այդ նրան չհաջողվեց։ Լուսավոր փողոցին սովորած նրա աչքերը կարծես հանկարծ կուրացան։

«Ի՞նչ մութ է այստեղ»—մտածեց նա։

Նա չհամարձակվեց քայլերը դանդաղեցնել։ Ձեռքերն առաջ պարզեց պատահական խոչընդոտից պաշտպանվելու համար. բայց նրա ոտքերը թափով դիպան մայթի եզրին։ Նա ճչաց, ոչ այնքան ցավից, որքան այն գիտակցությունից, որ բռնվելու էր։

3.

Հիվանդներից մեկը զգուշությամբ շուռ եկավ ու սկսեց խոսել կողքի մահճակալին պառկած նորեկի հետ։

— Այդ ինչպե՞ս պատահեց։

Ազատը լուռ և անշարժ պառկած էր մեջքի վրա։ Ի՞նչ պատասխանել։ Նա նորից հիշեց այն ամոթալի րոպեն, երբ էլեկտրասյան տակ ընկնելուց հետո նրան մոտեցան ընկերները։ Նա ամուր փակել էր աչքերը և աշխատում էր թաքցնել դեմքը։ Եվ ինչքան լավ էր, որ ուշագնաց եղավ ու չլսեց, թե ինչեր ասացին ընկերները։

Մոտեցավ հիվանդապահուհին և շտկեց Ազատի վերմակը։ Ազատը ամոթից ամբողջովին կարմրեց։

— Ցավե՞ր ունես,— սիրալիր հարցրեց հիվանդապահուհին։

— Ո՛չ, ո՛չ,— շտապ պատասխանեց Ազատը։

Ինչո՞ւ է հիվանդապահուհին այդքան սիրալիր։ Չլինի՞, թե գիտի իր մասին… գուցե գիտի և իր հարևանը։ Այո, այո, նրանք երկուսն էլ այնքան տարօրինակ են… Բայց ինքը կասի, կբացատրի նրանց։ «Չէ՞ որ ես սրտոտ եմ եղել։ Մի՞թե դա քիչ բան է»։ Ճիշտ է, հանցավոր, բայց սրտոտ է եղել։ Նրանք կհասկանան և գուցե ներեն իրեն։ Սակայն նա չհամարձակվեց խոսել։



Անցան օրեր։ Ազատը մտերմացել էր իր հարևանի հետ, որը մի ճարտարապետ էր։ Նա Ազատին այլևս չհարցրեց նրա հիվանդանոց ընկնելու պատմությունը։ Երբ Գևորգյանը (այդպես էր ճարտարապետի ազգանունը) առողջացել և պատրաստվում էր մեկնել, Ազատը տխրեց և միևնույն ժամանակ շփոթվեց. «Ոչ։ Նա պետք է իմանա ճշմարտությունը»։ Եվ Ազատը հուզված ասաց.

— Իսկ դուք գիտե՞ք՝ ես ինչպե՛ս եմ կոտրել ոտքս…

— Այո, գիտեմ, Ազա՛տ։ Դու գիշերները հաճախ էիր զառանցում և միշտ աշխատում էիր արդարացնել քո արարքը։ Ահա թե ինչ կասեի քեզ։ Սրտոտն ու անվախը նա է, ով հանրօգուտ աշխատանք է կատարում։

4.

Ավտոմեքենայի դուռը կամացուկ բացվեց, դուրս պարզվեց մի հենակ ու անվարժ կերպով սկսեց հենարան փնտրել գետնի վրա։

Ոչ ոք չէր եկել Ազատին դիմավորելու։ Տղաները հեռու մի անկյունում հավաքված, լուռ դիտում էին։ Մոր օգնությամբ Ազատը

դուրս եկավ մեքենայից, հենակները թևի տակ սեղմած. կարծես դրանք էին մատնում իր ով լինելը։

Երկու ամիս հիվանդանոցում պառկելուց հետո, նա տուն էր վերադառնում։ Նա գլխիկոր դուրս եկավ մեքենայից ու երբ անցնում էր էլեկտրասյան կողքով, կռացավ և խղճալի տեսք ընդունեց։ Աչքի տակով երկչոտությամբ նայեց այն էլեկտրասյանը, որի լամպերը փշրում էր ինքը։ Մեծ եղավ նրա ուրախությունը, երբ տեսավ կլոր լուսամփոփը։ Բայց ինչո՞ւ էր նա փշրում էլեկտրալամպերը, ի՞նչ հաճույք էր զգում դրանից. ինքն էլ չգիտեր։ Այժմ իր բերած պատճառաբանություններից և ոչ մեկը չէր համոզում իրեն։ Ամեն ինչ այնքա՜ն տարօրինակ էր թվում։ Նա պարզապես հիմար է եղել։

Բակում կանգնած էր Նորիկը։ Նա չգիտեր բարևի Ազատին, թե՞ ոչ։ Որքան հնարավոր էր արագ մոտենելով սենյակ Ազատն սկսում է մտածել, որ ինքն այլևս այնպիսին չէ, ինչպես առաջ էր։ Հիմա նրա առաջ կանգնած է մի դժվարին հարց. «Ինչպե՞ս ցույց տալ, որ ինքը նոր մարդ է»։

## 5.

Աշնանային դժգույն արևը բակում գծագրել է մերկացած թթենու ճյուղավոր ստվերը։ Քիչ հեռու պատշգամբի մոտ նստել է Ազատը։ Նա տխուր է և գունատ. իսկ թթենին անախորժ տպավորություն է թողնում նրա վրա։ Երբեմն նա փորձում է ինքն իրեն համոզել, որ եթե թթենին իրենց պատուհանի տակ աճած չլիներ, որի վրա նա բարձրանում էր հենց պատուհանից, ինքը երբեք չէր փշրի էլեկտրալամպերը։ Բայց այդ միտքը մի պահ է տևում միայն։ Նա պարզ զգում է, որ կեղծ հերոս է եղել։

Ընկերները դեռ չեն մոտենում նրան։ Նա տեսնում է հեռվից, թե ինչպես են նրանք արագ ելումուտ անում։ Ազատը շատ է ուզում տեղեկանալ դպրոցի և դասերի մասին։ Այս տարի այլևս նա չի կարողանա դպրոց հաճախել։ Նա երկու ամսով հետ է մնացել դասերից և եկող տարի նորից պետք է սկսի հինգերորդ դասարանից։

Ահա գլխարաց դուրս է վազում Նորիկը։ Ազատը գիտի, որ նա Վահեի մոտ է գնում սովորելու, թե արդյոք ճի՞շտ է լուծել թվաբանական խնդիրները, որպեսզի մաքրագրի։ Նա միշտ այդպես թերահավատ է եղել։ Բայց ահա բակի դռնից ներս է մտնում Վահեն։ Հիմա նա կծռվի դեպի ձախ և չի էլ նկատի իրեն։ Բայց տարօրինակ բան. նա մոտենում է իրեն։ Եվ ինչքան Վահեն մոտենում է, այնքան ավելի հանցավոր է զգում իրեն Ազատը։

— Բարև, Ազա՛տ։

— Բարև, Վահե՛։

Նրանք մեկնում են ձեռքերը և սեղմում։ Դա առաջին դեպքն է։ Առաջ նրանք երբեք ձեռք չէին տվել իրար։

Այդ արարքի մեջ հասունության և լրջության նշան կար։ Ազատն այդ պահին մի անգամ ևս գիտակցեց, որ ինքը ծանր հանցանք է գործել. բայց ընկերներն իրեն ներում են գուցե այն պատճառով, որ նա արդեն կրել է իր արժանի պատիժը։

— Դու բավական հետ ես մնացել դասերից։ Ջոկատը որոշել է օգնել քեզ։ Տարին չպետք է կորցնել։

Ազատի կոկորդը սեղմվեց. բայց հետո նրան ամեն ինչ թվաց այնպես պայծառ ու թեթև, ինչպես ամառը ճամբարում։

Երեկոները էլեկտրական լույսերի տակ զբոսնելիս Ազատը գետնի վրա տեսնում է իր ստվերը, որն աստիճանաբար ձգվում է կամ կարճանում։ Իսկ երբ հանկարծ չի տեսնում իր ստվերը, բնազդաբար վեր է նայում, նկատում փչացած էլեկտրալամպը, իսկույն շտապում է հեռախոսի մոտ...



— Ալլո՜... պիոներ Ազատն է... այդ ինչո՞ւ Թումանյանի փողոցի էլեկտրալամպերից մեկը չի վառվում։ Մարդիկ են անցնում, կարող են վայր ընկնել և վնասել ոտքը կամ ձեռքը...

# ԳԱՎԱԹԻ ՀԱՄԱՐ

Ապրիլի 5-ից մինչև 25-ը Երևան քաղաքի մասսայական դպրոցների վոլեյբոլի թիմերի միջև սպորտային համառ պայքար էր գնում: Նրանք պայքարում էին «Պիոներ» ամսագրի փոխանցիկ գավաթի համար:

Արդեն երկրորդ տարին է, որ պատանի սպորտսմենները մրցում են «Պիոների» գավաթի համար: Անցյալ տարի գավաթը շահեցին Պուշկինի անվան դպրոցի աղջիկների և 62-րդ դպրոցի տղաների թիմերը:

46 թիմերի միջև ծավալված մրցությունը երկու էտապ ուներ: Ռայոններում կազմակերպված փնջային մրցություններում առաջին տեղերը գրաված տղաների և աղջիկների թիմերը մասնակցեցին ֆինալային հանդիպումներին:

Ֆինալային խաղերը տեղի ունեցան 26 Կոմունարների անվան այգու հրապարակում ապրիլի 26-ին: Տղաների թիմերից ֆինալում խաղացին՝ 37-րդ դպրոցի թիմը և անցյալ տարի գավաթը շահած 62-րդ դպրոցի թիմը: Ծավալվեց համառ պայքար: Երկու թիմերն էլ խաղում էին առանձին ոգևորությամբ: Չէ՞ որ նրանցից մեկը չէր ուզում հանձնել պայքարով ձեռք բերած բանկագին գավաթը, իսկ մյուսը ձգտում էր նվաճել այն: Երկու թիմերն էլ խաղի էին եկել իրենց «բոլելշչիկներով»: Մեծ բազմություն էր հավաքվել հրապարակի մոտ:

Շուտով հաշիվը դառնում է մեկով մեկ: Սկսվում է երրորդ վճռական խաղը: 37-րդ դպրոցի թիմը խաղում է բացառիկ եռանդով: Նրանց անսահման ձգտումը՝ տիրապետել գավաթին պսակվում է հաղթանակով: Նրանք տանում են խաղը 2:1 հաշվով: Կրուպսկայայի դպրոցի աղջիկների հաղթանակով է ավարտվում նաև 3-րդ դպրոցի և Կրուպսկայայի անվան դպրոցի թիմերի հանդիպումը: Ներկա եղողների բուռն ծափերի տակ «Պիոներ» ամսագրի ներկայացուցիչը հաղթող թիմերին է հանձնում «Պիոներ» ամսագրի գավաթները:

*Ծ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ*

*(Երքաղժողկրթբաժնի ֆիզիկական դաստիարակության տեսուչ)*



*Ամսագրի գավաթը նվաճած 37-րդ դպրոցի թիմը*



*Ամսագրի գավաթը նվաճած Կրուպսկայայի դպրոցի թիմը*

# ՄԵՆՔ ԵՐԳՈՒՄ ԵՆՔ

## ԼՈՒՅՍԵՐԸ

Երբ տուն եմ դառնում
Ես ճանդից մութով,
Գյուղն է ինձ թվում
Լույսերով իր ծով:

Ժպտում է զվարթ
Գյուղը լուսավառ,
Ինչպես աստղազարդ
Երկինքը պայծառ:

Ու թվում է ինձ՝
Լույսերը այդ վառ,
Անմահ Իլյիչի
Աչքերն են անմար:

Պատգամներն են վեհ
Անմահ Իլյիչի,
Որ լույս են դարձել,
Ու էլ չեն հանգչի:

Թվում է, այդպես
Նա է գոհ ժպտում,
Որ կոմունիզմ ենք
Մենք արդեն կերտում:

ԱՐՄԵՆԱԿ ՂԱԶԻՆՅԱՆ
*(Նոյեմբերյանի շրջան, Կոթի գյուղ, միջնակարգ դպրոց, 6-րդ «ա» դասարան)*

## ԳԱՐՈՒՆ

Ժպտում են նորից
Վարդերը պես-պես,
Դիմացի սարից
Առվակներն են տես,

Աղմկում, երգում՝
Հոսում դեպի դաշտ,
Ուր կյանքն է եռում
Երջանիկ ու հաշտ:

Ու ձյունն էլ արդեն
Հալվել է վաղուց.
Մեղմ օրորվում են
Ծառերը քամուց:

Ծառերը կանաչ
Փքթում են, ծաղկում,
Տեսե՛ք, հիասքանչ
Գարուն է, գարուն:

ՌՈՒԲԻԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ
*(47-րդ դպրոցի 3-րդ դասարանի աշակերտ)*

## ԹՌՉՈՒՆՆԵՐՆ ԵԿԱՆ

Մեզ հյուր է եկել
Գարունը սիրուն,
Հալվել է ձյունը
Դարձել է առու:

Թռչուններն եկան
Հեռու տեղերից,
Բներ հյուսեցին
Երգեցին նորից:

Իսկ մենք հավաքվել
Դպրոցի այգում,
Ուրախ երգելով
Ծառեր ենք տնկում:

Լ. ԶԱՔԱՐՅԱՆ
*(Լենինականի Հ. Հակոբյանի անվան միջն. դպրոցի աշակերտ)*

# ԾՈՒՏՈՎ ԿԳԱ ԱՄԱՌ...

*Սովետական երկրի երեխաները ջերմորեն սիրում են մեր սոցիալիստական Հայրենիքը: Պատանի լենինյանների միակ ցանկությունն է դառնալ սովետական երկրի արժանավոր քաղաքացիներ, աղնվորեն աշխատել ու պայքարել Լենինի—Ստալինի վեհ գործի, կոմունիզմի վերջնական հաղթանակի համար:*

*Ուսուցիչներն ու ջոկատավարները երեխաներին հաճախ են պատմում մեր Հայրենիքի հարստությունների, կոմունիզմի մեծ կառուցումների մասին: Նրանք պատմում են գիտության, տեխնիկայի, կուլտուրայի նվաճումների, ժողովուրդների ստալինյան անխախտ բարեկամության, նշանավոր մարդկանց կյանքի մասին: Շատ հրաշալիքների մասին պատմում են նրանց սիրելի բարեկամները՝ գրքերը:*

*Կարդալով ռուս նշանավոր ճանապարհորդների, գիտնականների, բնության վերափոխիչների մասին, ամեն մի պիոներ ենթազում է նմանվել նրանց, ստեղծագործել և դրանով իսկ կրկնապատկել մեր Հայրենիքի փառքը:*

*Հայրենիքը լավ ճանաչելու և Հայրենիքի համար հայտնագործումներ կատարելու գործին շատ են օգնում արշավներն ու ճանապարհորդությունները: Հաջողությամբ ավարտելով ուսման տարին, հազարավոր պիոներներ դուրս են գալիս ամառային արշավների: Սկսվում է հետաքրքրական մի կյանք, երբ երեխաները գիշերում են վրանների տակ, հաղթահարում են դժվարությունները, կոփում իրենց կամքը, ֆիզիկապես ամրանում:*

*Մեծ գրող Մ. Գորկին ասել է՝ մենք պետք է իմանանք մեր հողը մինչև նրա վերջին ատոմը: Պետք է բաց անենք նրա ընդերքի բոլոր գանձերը:*

*Պատանի ճանապարհորդները պետք է լավ իմանան իրենց քաղաքի, գյուղի, շրջանի պատմությունը. նրա անցյալն ու ներ-*

կան։ Հետաքրքրական է իմանալ, թե ձեր շրջանում ինչ բույսեր են աճում. դրանց մեջ չկա՞ն դեղաբույսեր, ներկատու բույսեր, հավաքել նրանց սերմերը, սեփական ձեռքերով կազմել հերբարիում հարազատ դըպրոցի համար։ Իսկ ո՞վ չէր ցանկանա գիտենալ, թե ինչ թռչուններ, գազաններ, բուժիչ ջրեր, հանքային տեսակներ կան հայրենի անտառներում, դաշտերում։

Ծանոթացեք շրջանի հնություններին, պատմական վայրերին, եղեք գործարաններում, կոլտնտեսություններում, գրի առեք երգերը, ծանոթացեք աշխատանքի մարդկանց հետ, և դուք շատ նոր բան կսովորեք։ Ճանապարհորդները բացի հատուկ հանձնարարություններ կատարելուց՝ կարող են նկարել, գրել իրենց տպավորությունները, հատուկ թերթեր լույս ընծայել, հավաքել քարերի, միջատների, թիթեռների տեսակներ և հանձնել դպրոցի բնագիտական կաբինետին։

Որպեսզի հայրենի երկրում կատարվող արշավներն ու ճանապարհորդություններն արդյունավետ անցնեն, անհրաժեշտ է լուրջ նախապատրաստություն։ Արշավի բոլոր մասնակիցները պետք է բժշկական քննության ենթարկվեն և սովորեն՝ վրան խփել, առաջին օգնություն ցույց տալ դժբախտ պատահարների դեպքում, կարդալ տեղագրական քարտեզ, կողմնորոշվել տեղական առարկաների միջոցով, խոսել Մորզեի այբուբենով, իմանալ ճանապարհային նշանները, ձեռք բերել ճամբարային հանդերձանք և վարժվել հեռավոր ճանապարհորդության։ Արշավի մեկնելուց առաջ պետք է ամբողջ մասնակիցների ներկայությամբ մշակել արշավի պլանը, որոշել նպատակը և կատարել աշխատանքի բաշխում։ Երբ կավարտեք պլանով նախատեսնված արշավը, երեկոյան խարույկի շուրջը ամփոփեցեք արդյունքները։ Պատմեցեք, թե ինչ սովորեցիք։

Ամառային արշավները, ճանապարհորդությունները ձեզ շատ բան կսովորեցնեն։

Թող յուրաքանչյուր պիոներական ջոկատ ակտիվորեն մասնակցի հայրենի երկրի ուսումնասիրության գործին։

Վ. ԲԱՐԱԽԱՆՅԱՆ

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

### «Քրդական ժողովրդական հեքիաթներ»




Հաջիե Ջնդիի «Քրդական ժողովրդական հեքիաթներ» ժողովածուի մեջ սքանչելի հեքիաթներ կան։ Նրանց մեջ պատմվում են հնարագետ հովիվների, աղքատ ու խեղճ հողագործների, խարդախ հարուստների, անարդար գործերի համար պատժված թագավորների մասին։ Այդ հեքիաթները հյուսվել են շատ վաղուց և սերնդից-սերունդ պատմվելով հասել մեզ։

Արագածի զովասուն լանջերին ծերունի քուրդ հովիվները սառն աղբյուրների մոտ հավաքում են կոլտնտեսային հոտը։ Նրանց շրջապատում են պատանի հովիվները՝ հորթարածներն ու գառնարածները։ Եվ ահա ծերունիներից մեկը սկսում է իր սքանչելի հեքիաթները, որ լսել է իր պապերից մանկության օրերին։ Ամառան գիշերները հաջորդում են իրար, իսկ նրանց հեքիաթներին վերջ չկա։ Ո՞ր մեկը թվես, «Սրնգահար հովիվը», «Նամարդոն և իր կինը», «Բալուլի Ջանան», «Խազալը և Ուսուբը» և ուրիշ շատ հեքիաթներ, որոնք կգտնեք այս գրքում։

### «Մանկական պատմվածքներ»



Գարուն է։ Երեխաները կոլտնտեսության նախագահ Տիգրանից տեղ են խնդրում ծառեր տնկելու համար։

— Լավ բան եք որոշել,— ասում է ընկեր Տիգրանը։

Նա կատարում է երեխաների ցանկությունը։ Նրանք ստանում են տընկիներ և մի փոքր տարածություն՝ կոլտնտեսության այգու մոտ։

Երվանդը, Կարենը և մյուս երեխաները գյուղատնտես քեռի Վարդանի ցուցումներով փոսեր են փորում և ծառեր տնկում։ Բայց, այս ի՞նչ է. փոքրիկ Նունիկը ծառը տնկել է արմատը վերև դարձրած։ Աղմկում են երեխաներն ու ծիծաղում։ Քեռի Վարդանն օգնության է հասնում Նունիկին։

Անցնում է մի քանի շաբաթ։ Բողբոջում են ծառերը, նրանց հետ նաև Նունիկի ծառը։ Երեխաները

որոշում են իրենց պարտեզի անունը դնել «Ուրախ գարուն»։

«Մանկական պատմվածքներ» գրքույկում զետեղված են «Մայիսին», «Ես ռևոլյուցիոներ եմ», «Հին դպրոցը» և այլ գործեր, որոնց մեջ պատմվում է ցարական կարգերի դեմ բանվորների մղած պայքարի մասին։ Այդ պայքարին մասնակցում են նաև նրանց երեխաները։

«Դրոշակը», «Քաջ տղաները», «Փոքրիկ կոմունար», «Ճյուղավոր ցորենը» և այլ պատմվածքներում Արազին պատմում է աշխատասեր ու խիզախ պատանիների մասին։

ԱԼԲ. ՇԱՀԱԶԻԶՅԱՆ

## «Շողիկներ»




Վազգեն Տալյանի «Շողիկներ» գրքում զետեղված բանաստեղծությունների թեմաները վերցված են տարբեր տարիքի մանուկների կյանքից։ Կան նաև կենդանիների մասին գրված ոտանավորներ։

Հաջողված է «Ճայթուկը» բանաստեղծությունը։ Այստեղ ոչ միայն երեխայի հնարագիտությունն է խրախուսվում, այլև ծաղրվում է վախկոտությունը։ Տալյանին հաջողվել է առօրյա փաստը տալ մանուկների բնորոշ լեզվով ու ոճով։

Գրքույկի լավագույն բանաստեղծություններից են՝ «Հեռախոսը», «Իմ տիկնիկը», «Նավաստին», «Նկարել եմ», «Ես շոֆեր եմ» և ուրիշները։

Մեր երեխաների ուրախ կյանքը, նրանց հրճվանքը դպրոց գնալիս, նրանց զբաղմունքները, նրանց բարեկամությունն ու մտերմությունը, նրանց հնարագիտությունն ու աշխատանքը.— ահա այս գաղափարներն են, որ տրված են Տալյանի ոտանավորներում։

Վ. Տալյանի «Շողիկներ» գրքույկում զետեղված բանաստեղծությունները դաստիարակիչ են և երկար մնում են հիշողության մեջ։

ՀԵՂ. ՇԻՐԱԶՅԱՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ




Խմբագիր՝ ՍԵՎՈՒՆՑ Գ.

Խմբագրական կոլեգիա՝ ԱՄԻՐՅԱՆ Մ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹԵՎԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՇԱԽՈՒԼՅԱՆ Մ., ՏԱԼՅԱՆ Վ.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул Маркса 21

Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06

ՎՖ 02698։ Պատվեր 307, տիրաժ 5000, Տպագրական 2 1/4 մամուլ։ Ստորագրված է տպագրության 9.V. 1953 թ.

Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1953 թ.




## Ռադիոյի մեծ գյուտարարը

1899 թվականի նոյեմբերին ռուսական «Գեներալ-ադմիրալ Ապրաքսին» զրահակիրը դուրս էր եկել Կրոնշտադտից և գնում էր դեպի արտասահման: Բալթիկ ծովում ուժեղ փոթորիկ բարձրացավ: Զրահակիրը շեղվեց ուղուց, ֆիննական ծոցում, Գոգլանդ կղզու հարավային ափի մոտ, զարկվեց ստորջրյա քարերին և ուժեղ վնասվածքներ ստացավ: Զրահակրի փրկության համար կազմակերպվեց աշխարհի առաջին



գործնական ռադիո-կապը՝ աղետի վայրի և ափի ամենամոտ կետի միջև, 46 կիլոմետր տարածության վրա: Զրահակիրը և նրա անձնակազմը փրկվեցին:

Այդ ռադիո-կապի հեղինակը ռուս մեծ գիտնական, ուրալցի գյուտարար Ալեքսանդր Ստեպանովիչ Պոպովն էր:

Դեռևս 1889 թվականին նրա գլխում մի համարձակ միտք ծագեց՝ օգտագործել էլեկտրամագնիսական ալիքները, մի տեղից մյուսը անթել հեռագիր ուղարկելու համար: 1895 թվականի մայիսի 7-ին ռուսական ֆիզիկո-քիմիական ընկերության նիստում Պոպովը զեկուցեց իր կառուցած նոր գործիքի մասին, որն էլեկտրա-մագնիսական ալիքներ էր ընդունում: Այդ գործիքը գյուտարարն անվանել է ամպրոպանշիչ: Ամպրոպանշիչի գյուտը սկիզբ է դնում կապի մի նոր միջոցի՝ անթել հեռագրին: Այդ օրը պատմության մեջ մտավ որպես ռադիոհեռագրի ծննդյան օր:

Պոպովն աստիճանաբար կատարելագործում է իր գյուտը: 1897 թվականի գարնանը ռադիոյի գյուտարարն իր փորձերը կատարում է ծովում: Սկզբում կապ է հաստատում 5, ապա 11, իսկ հետո 45 կիլոմետր հեռավորության վրա: 1896 թվականին Պոպովի գյուտի սխեման տպագրվեց թերթերում: Իտալացի Մարկոնին 1897 թվականին նույնությամբ օգտագործեց Պոպովի սխեման: Գիտնականների հատուկ հանձնաժողովը մի քանի տարի անց ստուգեց և վերջնականապես հաստատեց, որ կապի նոր միջոցի՝ ռադիոհեռագրի ստեղծողը ռուս մեծ գիտնական Ա. Ս. Պոպովն է: Միայն սովետական կարգերի օրոք Պոպովի գյուտը լայն տարածում ստացավ, դարձավ ժողովրդի սեփականությունը:

Ամեն տարի մայիսի յոթը մեր երկրում տոնվում է որպես «Ռադիոյի օր»:

## Հանրի Բարբյուս

*(Ծննդյան 80-ամյակի առթիվ)*

Բարբյուսի գրական ուղին հետաքրքրական էր: Երբ նա գրական ասպարեզ մտավ, ֆրանսիական գրականությունը անկում էր ապրում: Բայց նույնիսկ այդ ժամանակ Բարբյուսն իր առաջին վեպերում ձգտում էր նկարագրել իրական կյանքը: Բարբյուսի կյանքի և ստեղ-



ծագործության համար վճռական նշանակություն ունեցավ առաջին համաշխարհային պատերազմը: Նա որպես կամավոր մեկնեց ռազմաճակատ: Նա հավատում էր, որ գնում է պաշտպանելու Ֆրանսիան և ֆրանսիական ժողովրդին: Բայց համոզվեց, որ պատերազմը հրահրել են իմպերիալիստները՝ երկրներ տիրելու և ժողովուրդներին ստրկացնելու համար: Նա 1916 թվականին տպագրեց իր հայտնի «Կրակ» վեպը, որի մեջ մերկացնում էր նրանց, ովքեր իրենց գիշատիչ շահերի համար միլիոնավոր մարդկանց դատապարտել էին անհուն տառապանքների: Գրքում երևում է ոչ միայն Բարբյուսի, այլև աշխատավորների ռևոլյուցիոն գիտակցության գալը: Այդ գիծը նա ավելի է խորացնում 1919 թվականին գրած «Պայծառություն» վեպում:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան ազդեցություն գործեց Բարբյուսի վրա: Նա գրողների միջազգային միավորման՝ «Կլարտե» կազմակերպիչներից մեկն էր: 1919 թվականին նա գրեց «Մենք մեղադրում ենք» հոդվածը, որտեղ կոչ էր անում աշխատավորներին պայքարել իմպերիալիստների դեմ, պաշտպանել սովետական ռեսպուբլիկան: Նա մինչև կյանքի վերջը մնաց Սովետական Միության հավատարիմ բարեկամ:

Բարբյուսը գրել է շատ գրքեր՝ բանաստեղծություններ, վեպեր, պատմվածքներ, հրապարակախոսական փայլուն գործեր: Նրա հայտնի գործերից է «Ստալինը» (1935 թ.), որի մեջ նա ստեղծում է ժողովուրդների իմաստուն առաջնորդի կերպարը:

Բարբյուսի ստեղծագործությունը բարձր են գնահատել մեծ առաջնորդներ Լենինը և Ստալինը:

